ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

# Անսահմանի սահմանին

Հասա երկնքի մովին,
Մորս մաքրությանը՝ չհասա,
Հասա հեռավոր ծովին,
Մորս խորությանը՝ չհասա:
Հասա ես արև ու ամպին,
Մորս բարությանը՝ չհասա,
Հասա ես, հասա մորս ճամփին,
Մորս սրբությանը՝ չհասա:

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

# Ասպետն ու արքայազնը

Նկարը ԲՈՐԻՍ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ամեն դարաշրջան և ամեն մարդ յուրովի է ընթերցում ասպետության մասին գրքերը: Նշանավոր ասպետ Դոն Կիխոտը յուրովի ընթերցեց իր նախորդների մասին գիրքը, և հայտնի է, թե դրանից ինչ դուրս եկավ: Հետնորդները յուրովի ընթերցեցին նրա մասին նշանավոր գիրքը, և դա էլ գիտենք՝ ինչով վերջացավ:

Գրքում կա մի տեղ, ուր ծպտյալ մի ասպետ՝ նույն անունով, նույն հանդերձով հանդիպում է նշանավոր ասպետին և մենամարտում նրա հետ: Ուրեմն, արդեն հեղինակի գրքում կային ասպետության գաղափարները հափշտակողներ և դրանով դիմակավորվողներ: Գիրքն էլ ունեցել է նույն ճակատագիրը. գրքի գաղափարը գողացան, հայտնվեց կեղծ մի հորինվածք նույն ասպետի մասին, մի ոմն գրող ասելիք չուներ, հափշտակեց ուրիշի ասելիքը: Նա էլ նույն ավազակներից էր, որ յուրացրին մեծ նահատակի գաղափարը՝ իրենց հետագա շահատակությունները դարձնելով անվտանգ ու օրինավոր: Գողանում են ոչ միայն մարդու դատած հացը, դրամը, ունեցվածքը, այլև տառապանքով ու արյունով ծնած գաղափարը, և օգտվում դրանից, ինչպես ավազակը՝ ուրիշի դրամից:

Իսպանիան տվել է ինկվիզիցիա և Դոն Կիխոտ, որքան տարբեր, բայց և՝ ընդհանուր նմանության եզրերով: Առաջինը, սակայն, կույր հավատի, իսկ Դոն Կիխոտը հավատաքննիչն էր բարու և ազնվության:

ՀԵՂԻՆԱԿ

Արքային և նրա մերձավորներին, որոնց մեջ էին արքունապետի որդին, երիտասարդ պալատականը և շատ ուրիշներ, պատրաստվում էին հրապարակում պատժելու:

Հրապարակը ծովի պես լցված էր, դա այն նույն հրապարակն էր, ուր մի քանի օր առաջ արքան իր առաջին գահաճառն էր արտասանել, և մարդիկ էլ նույն մարդիկ էին, որ այդ օրը հավաքվել էին նրան ողջունելու: Նույն հարթակից, որից արքան խոսել էր, մարդիկ փոխնիփոխ գոռում էին, հայհոյում, անիծում արքային և նրա մերձավորներին, պահանջելով զանազան պատիժներ նրանց համար: Իսկ մեկը իր կուրծքը ծեծելով, անընդհատ նույնն էր կրկնում.

— Կախաղաններ, կախաղաններ կառուցեք...

— Իսկ ո՞վ է լինելու մեր նոր արքան, արքայազնը մահացավ:

Ամբոխի միջից մեկը ձայն տվեց.

— Ես այստեղ եմ, պարոնայք, ես ձեր նոր արքան եմ, ուրիշ տեղ մի փնտրեք: Տեղ տվեք, խնդրեմ:

Ամբոխը ճեղքելով, առաջ եկավ մեկը: Դա կարճլիկ, գնդլիկ, կարմրաթուշ մի մարդուկ էր, ավանակի մտրակը գոտու տակ խրած:

Բոլորին նա ծիծաղելի թվաց, բայց նոր արքան ամենայն լրջությամբ կանգնեց ժողովրդի առաջ և հանկարծ իր դեմ միանգամից այդքան մարդ տեսնելով, սարսափահար ետ ընկրկեց.

— Հոո,— արեց նա դողացնելով:

Ժողովուրդը ծիծաղեց:

— Ոչ մի մեղավոր չպիտի փրկվի, ես արդարություն եմ պահանջում, արդարություն,— նորից գոռաց նույն մարդը կուրծքը ծեծելով:— Կախաղաններ, կախաղաններ մեղավորների համար, բոլորի համար, բոլորի...

— Ժողովուրդ,— ասաց նոր արքան,— երդվում եմ աղքատի իմ պատվով, ես եմ ձեր նոր թագավորը: Իմ տերը հենց նոր մենամարտում նվաճեց այս երկիրը ու նվիրեց ինձ: Մեր մեջ վաղուց կար այդ պայմանավորվածությունը:

— Ինչպե՞ս նվաճեց, արքային սպանելո՞վ, երևի,— ասացին ամբոխի միջից:

— Ոչ, ընդհակառակը, նրան մահից փրկելով:

Նրա ամեն խոսքը ժողովուրդը դիմավորում էր ծիծաղի պոռթկումով:

— Հա՛, հա՛, հա՛, լավ է խոսում, թող դա լինի թագավորը:

— Մի խելագար մյուս խելագարին է նվիրում այն, ինչն իրեն չի պատկանում,— ասաց արքան:

— Բայց հենց դուք, ձերդ նախկին գերազանցություն, ձեր բերանով, երբ նեղն էիք, թագավորության կեսը, ապա՝ ողջը խոստացաք:

— Սա նա չէ՞, որ մեզ տկճորով գինի տվեց,— ասաց զինվորներից մեկը մյուսին:— Թող լինի թագավոր:

— Թող լինի թագավոր:

— Բայց նրանից սխտորի հոտ է գալիս,— ասաց նոր արքային մոտ կանգնածներից մեկը:

— Թող լինի թագավոր՝ սխտորի հոտով:

Ամբոխը սիրում է, որ իր սարքած տեսարանը տպավորիչ լինի, եթե տուն է փլում՝ դղրդոցը ուժեղ լինի, եթե հրդեհ է՝ ծուխն էլ շատ լինի, բոցն էլ, ծիծաղն էլ, լացն էլ, և ինչքան շատ, այնքան լավ:

— Տեր իմ, մի՞թե ինձ չեք ճանաչում,— ասաց սև վիրակապով դատարկ աչքախոռոչը կապած մի զինվոր:

— Ինչպես չեմ ճանաչում, ապիկար, դու չէի՞ր, որ գինիս խմեցիր, հետո գլխիս դրեցիր տատասկից հյուսած պսակը:

— Այո, ես էի, և ձեռքս արդեն սովոր է թագադրության, գլուխդ մոտ բեր, ձերդ ամենանորին գերազանցություն, սա իսկական թագ է, զուտ ոսկուց և ադամանդակուռ: Մի ժամանակ՝ ծաղրելով, այժմ՝ շատ լուրջ թագադրում եմ քեզ: Ողջ եղիր, թագավորդ Դանիո...

Կատակը բոլորին դուր եկավ, մարդկային ծովն ալեկոծվեց, բազմալեզու գոռում էին, ճչում հրճվալի, գլխարկներ էին նետում երկինք:

— Խոսիր, ժողովուրդը քեզ է սպասում:





Նորընծա արքան ամենայն լրջությամբ քայլեց առաջ, ձեռքը բարձրացրեց, և աղմուկն աստիճանաբար խաղաղվեց։ Բոլորն էին սպասում, թե ինչ կասի այդ կլորիկ-գնդիկ արքան։

— Մարդիկ,— սկսեց նա,— զինվորներ, կնանիք, ժողովուրդ։ Երբ պատերազմ է լինում, թագավորները մի բերան գոռում են, որ հայրենիքը վտանգի մեջ է, պետք է պաշտպանել, բոլորիս ուղարկում են կռվելու, որ մեռնենք ու արյան գնով պաշտպանենք հայրենիքը։ Իսկ ո՞րն է հայրենիքը։ Ջրերը, հարթավայրերը, գետերը, սարերը, արտերը, արոտները, ագարակները, մեղուները, ծիածանը, լճերը, օվկիանոսը, դա է, մեռնեմ նրա արևին, դա է հենց հայրենիքը, որ բոլորինս է, դրա համար մենք միշտ էլ պատրաստ ենք մեռնելու։ Բայց երբ պատերազմն ավարտվում է, պարզվում է, որ ոչինչ էլ մերը չէ, ո՛չ արոտավայրերը, ո՛չ արտերը, ոչինչ, դրանք իրենց տերերն ունեն, որ տեղից էլ չեն շարժվել։ Ստացվում է, որ հայրենիքը մեռնելու համար մերն է, ապրելու համար՝ նրանցը։ Թե մարդիկ ենք, բոլորս ենք մարդիկ։ Իսկ ոսկեդարում...

— Ո՞վ է այս մարդը, որ խոսում է։

— Ասում են՝ դա մեր նոր արքան է։

— Դա այն ավանակի տերը չէ՞։

— Այն ավանակի տերն է, հիմա էլ մեր տերն է լինելու։

— Սա այն խեղկատակը չէ՞, որ բոլորին ծիծաղեցնում էր։

— Այն խեղկատակն է, մի՞թե այժմ նա նույնը չի անում։

Նորից նույն մարդը կուրծքը ծեծելով գոռաց.

— Ես արդարություն եմ պահանջում, ոչ մի մեղավոր չպիտի փրկվի դատից։ Կախաղաններ, կախաղաններ...

— Պարոն արդար,— ասաց զինակիրը նրան, որ ավելի մոտիկ էր կանգնած,— պարոն արդար, քանի՞ կախաղան։

— Տասնյակ, հարյուրավոր, հազարավոր...

— Պարոն, ձեր արդարությունը չափ ու սահման չունի, մի՞թե ինքներդ ձեզ էլ եք կախելու... Հոո, վայ մայրիկ, նորից դողս բռնեց։

Այդ ժամանակ ինչ-որ մարդիկ վրա հասան, նրան առան իրենց ուսերին ու ձեռքերի վրա շարժվեցին դեպի կառափնարան, ուր պիտի կայանար մահապատիժը։

— Ապրի արքան, երկար արև արքային,— բազմությունը նրա շուրջն աղմըկում, ճչում, գդակներն էր վերվեր նետում։

— Մահ արքային, մահ։

— Կառափնարան...

— Հենց հիմա, անմիջապես, իսկույն...

Զինակիրը վերևից նայում էր իր շուրջն ալեկոծվող մարդկային ծովին, չէր ըմբռնում՝ ո՞ւմ մահ, ո՞ւմ՝ երկար արև, և ինչու են իրեն երկար կյանք ցանկանում և միաժամանակ տանում դեպի կառափնարան։

— Թողեք ինձ,— վերևից գոռաց նա ու իրեն նետեց ներքև,— թողեք ինձ, ես ոչինչ չեմ ուզում, ո՛չ թագավորություն, ո՛չ գահ, ո՛չ երկար արև և ո՛չ էլ կառափնարան... Ամեն ինչ ձեզ լինի։

Նա խցկվեց բազմության մեջ, չորեքթաթ անցավ ոտքերի արանքներով, բազմությունն աղմկեց, հռհռաց, ծիծաղեց, չիմացան՝ ինչ եղավ նոր արքան, ուր կորավ։ Իսկ նախկին արքային քարշ տվին դեպի կառափնարան։ Մեկը կոպտորեն բռնել էր նրա շլնքից և ասում էր.

— Արի, տեր իմ, իմ գործը մեռել թաղելն է։ Ասում էի, չէ՞ որ ես նորին գերազանցության թագավորի գերեզմանափորն եմ։

Զինակիրն ամեն ինչ ձգեց այստեղ ու վազեց տիրոջ մոտ։ Ասպետը վերջին շնչում էր, նրա մոտ ծնկի գալով, զինակիրն ասաց.

— Առաջին անգամ, տեր իմ, զղջում եմ, որ լսեցի ձեզ ու վազեցի հրապարակ։ Դուք ասացիք, որ կարող է պահը ձեռքիցս բաց թողնեմ։ Սակայն ինչ ողորմելի բան է թագավոր լինելը, տեր իմ, ում է պետք դա։ Ինչ է կատարվում այնտեղ, չեք պատկերացնի, շունը տիրոջը չի ճանաչում, մեկի աչքը դուրս գա, մյուսը կասի՝ էլ ինչիդ է պետք, տուր տանենք մեր կատվին։ Մեր ինչի՞ն է պետք թագավորությունը, մի՞թե դրա համար ենք մենք ելել աշխարհով մեկ թափառելու։ Չկա և չի լինելու այն իշխանությունը, որ հավասար բոլորի սրտով լինի, երկնային արքայությունից անգամ դժգոհներ կլինեն։ Երբ ես ասացի, որ իրենց արքան եմ, բարձրացա վեր, որ ժողովուրդն ինձ տեսնի,— քիթը վեր քաշելով, շարունակեց զինակիրը,— ու վերևից որ չնայեցի՝ ներքևում բաց բերաններ էին, տասնյակ, հազարավոր բաց բերաններ, ու բոլորի կոկորդից նույնն էր դուրս գա-

լիս՝ մահ, մահ, կախաղան, կառափնարան: Վախենալու էր, տեր իմ, ատելության այդ ծովը: Վաղը հենց այդ նույն ձևով իմ մահն են պահանջելու: Հազիվ փրկվեցի գահից ու մահից: Ոչ, այդ գործը մեզ համար չէ: Իմ խելքը մենակ մի բան է լավ կտրում. վարել, մշակել հողը, էտել խաղողի որթերը և ոչ թե օրենքներ հրապարակել ու պետություն կառավարել, և ինձ ավելի վայել է մանգաղ բռնել ու ոչ թե գավիթան:

Ասպետից ո հեռու մահամերձ արքայազնն էր՝ գլուխը իր ընկերոջ ծնկներին:

— Մեռնում եմ վրէժս չլուծած,— հառաչելով ասաց նա:— Սակայն մահից վատթարագույնը վատթար անունով ապրելն է, և թող դա էլ լինի նրա դատը:

— Ժամանակը ճիշտ ժամանակին է արել իր վճիռը,— ասաց ընկերը:— Արքան դատապարտված է ու պատժված:

Ձայնի վրա ասպետը բացեց իր աչքերը.

— Ո՞վ է այստեղ հառաչում անուժ,— ասաց նա:

— Մահամերձ արքայազնն է, տեր իմ,— արցունքները սրբելով, ասաց զինակիրը:

— Գիտեմ, որ ինձ ապրելու վայրկյաններ են մնում, բայց դու հարցրու նրան, թե ինչ վիշտ ունի և ինչով կարող է թափառական ասպետը օգնել նրան: Ես պատրաստ եմ:

— Եթե պատմելու լինես,— ասաց արքայազնն իր ընկերոջը,— պատմիր այնպես, ինչպես եղավ, առանց ոչինչ ավելացնելու: Ու եթե կարող ես, իմ տարաբախտ մոր համար կարեկցանքի ու ներման մի խոսք գտիր, եթե կարող ես, եթե կարելի է, եթե գտնվի…

— Այդ ձայնն անասելի պլեկոծում է իմ հոգին ու բզկտում սիրտս,— ասաց ասպետը:— Ինչ մեծ վշտի տեր պիտի լինի այդ մարդը…Ես պետք է օգնության հասնեմ նրան:

— Ո՞վ է այստեղ հեծեծում,—հարցրեց արքայազնը:

— Ասպետն է, տեր իմ: Նա, որին դուք մահացու վերք հասցրիք:

— Պարոն, ի՞նչ է ձեր վիշտը,— ասպետը փորձեց ձեռքը մեկնել նրան:— Ուզում եմ օգնել, բայց, ներեցեք, չեմ կարող, բարեկամ, ձեռքս այլևս ինձ չի ենթարկվում և, ավաղ, թուր չի կարող բռնել…— Ասպետի աչքերից արցունքներ գլորվեցին:— Ի՞նչ պիտի լինի մարդկության օրն առանց թափառական ասպետների: Ահա ափիցս ընկավ սուսերս…

Արքայազնն իր հերթին ցանկանում էր ձեռքը մեկնել ասպետին, չէր կարողանում:

— Ահա իմ ձեռքը…

Նրանց շուրջը կանգնած մարդկային բազմությունը լուռ ունկնդրում էր երկու մահամերձ մարդկանց վերջին խոսքերը:

— Ցանկանում եմ վերջին անգամ խոսել ձեզ հետ, մարդիկ,— ասաց ասպետը իր շուրջը կանգնածներին:— Եթե կյանքի այլևայլ պայմաններում ձեր արժանապատվությունը վիրավորեն ու ոտնահարեն այս աշխարհի մեծամեծերը կամ նրանք, որոնց կամքից է կախված ձեր ու ձեր երեխաների տիրությունն ու ուրախությունը, եթե ձեզ միայնակ և լքված զգաք, իմացեք, որ ասպետը ձեզ հետ է, որ իմ սրտից մի մասնիկ ապրում է ձեր մեջ, բարձրացրեք հպարտությամբ ձեր գլուխը և դարձյալ ձեզ մարդ զգացեք, մի ցույց տվեք, որ ստորացրին ձեզ, որ կարողացան դա անել: Բարձր, բարձր պահեք ձեր գլուխը, մարդ զգացեք ձեզ՝ հակառակ ամենքի և հակառակ ամեն ինչի…

— Իմ ձեռքը…— ասաց արքայազնը ձգվելով դեպի ասպետն ու լռեց ընդմիշտ:

Ձայնի վրա ասպետը կրկին դարձավ դեպի նա և, ձեռքը դժվարությամբ մեկնելով, արդեն հազիվ լսելի ասաց.

— Իսկ ձեզ, պարոն, շատ կցանկանայի օգնել, բայց… ահա…

— Այդ ի՞նչ եք անում, պարոն ասպետ,— բարձր հեծեծաց զինակիրը,— իմ սիրելի ողորմած տեր, մի մեռեք, խնդրում եմ, ամենամեծ խելագարությունը մեռնելն է… Ինչ անիմաստ է աշխարհն առանց ձեզ: Ելեք, տեր իմ, ելեք գնանք աշխարհով մեկ թափառելու ու նորից փնտրելու այն, ինչ միշտ փնտրել ենք և ինչն անհնարին է գտնել…

Երկուսն էլ այլևս անշարժ էին՝ անկենդան ձեռքերը միմյանց մեկնած, մեկն ակամա հանցանքի համար ներողություն հայցելու, մյուսը՝ նրան օգնության հասնելու մղումով:

Օրն ամպոտ էր, և առավոտից անձրև էր մաղում: Իրիկվա կողմ ամպերը ցրվեցին, և հանգչող արևը մայրամուտից առաջ մի պահ երևաց հորիզոնում:

1616 թվականի ապրիլ ամսի 23-ն էր:

**ՖԵԴԵՐԻԿՈ ԳԱՐՍԻԱ ԼՈՐԿԱ**
(իսպանացի բանաստեղծ)

# Խեցի

Ինձ բերել են մի ծովային խեցի:
Քարտեզի ծովն է
նրա մեջ երգում:
Ու սիրտս հանկարծ
լցվում է ջրով՝
մութի, արծաթի
ձկնիկների հետ:
Ինձ բերել են մի ծովային խեցի:

# Բնանկար

Սխալվել է երեկոն
Ու ցուրտ է հագել:

Պատուհանի ետևից
մանուկներն են նկատում,
թե ոնց է ծառը դեղին
հավք դառնում օդում:

Եվ փռվում է գիշերը
երկարությամբ գետերի,
ու խնձորի կարմիրն է
դողում ամեն կտուրի:

# Համր տղան

Տղան փնտրում է իր ձայնը
(այն գտել էր ծղրիդ արքան),
ցողի ամեն կաթիլի մեջ
փնտրում էր իր ձայնը տղան:

— Թե գտնեի ես իմ ձայնը,
մի մատանի կսարքեի,
որ կրեր այն իր ճկույթին
լռությունը իմ խոսքերի:

Ցողի ամեն կաթիլի մեջ
Նա իր ձայնն էր փնտրում դարձյալ:

(Իսկ ձայնն այնտեղ, հեռվում գերված՝
ծղրիդին էր զգեստ դարձել):

Իսպաներենից թարգմանեց
ՖՐՈՒՆԶԻԿ ԿԻՐԱԿՈՍՅԱՆԸ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

**ԱԼԲԵՐՏՈ ՄՈՐԱՎԻԱ** (իտալացի գրող)
(ծնվ. 1907 թ.)

# Արագիլ մի սիրիր

Իտալերենից թարգմանեց
ԳԱԳԻԿ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԸ

Միլիարդավոր տարիներ առաջ Բ. Վենը՝ հնաոճ ու մարդատյացի մեկը, ապրում էր քարայրում, որ բացվում էր ապառաժոտ պատի խորոչում: Թվում էր, թե այդ պատը վեր բարձրանալով, հասնում էր երկինք, վար իջնելով՝ խորտակվում անհատակ անդունդի մեջ:

Քարայրից ժայռոտ մի ելուստ էր դուրս ցցված, որտեղից ամեն գիշեր Բ. Վենը թռչում-գնում էր որսի՝ մեկ-երկու մուկ բռնելու՝ հաջորդ օրը սեղանին դնելու համար:

Բ. Վենը երբեք ամուսնանալու ցանկություն չէր ունեցել: Նա ասում էր. «Էհ, խելքս հո հացի հետ չեմ կերել, որ թողնեմ որևէ մեկը տունս մտնի»: Տան բոլոր գործերն իր հավատարիմ ու ժիր ծառան էր անում, անունը՝ Չըղ Ջիկ, որը, սակայն, մի շատ վատ սովորություն ուներ. շարունակ առաստաղից կառչում և գլխիվայր կախվում էր: Այդ սովորությունը Բ. Վենի կարծիքով ազդում էր (այլ կերպ չէր էլ կարող լինել) Չըղ Ջիկի մտքերի վրա: «Գլխիվայր կախված,— նկատում էր Բ. Վենը,— կարելի է միայն գլխիվայր մտքեր ունենալ»:

Նրա կանխազգացումը շատ շուտ հաստատվեց: Մի երեկո Բ. Վենը, իր ելուստին նստած, պատրաստվում էր մկան որսի գնալու, երբ հեռու-հեռվում, երեկոյան պարզ երկնքում մի բան տեսավ, որ սպիտակ շղարշի նման ծածանվելով, մոտենում էր:

Ի՞նչ էր: Բ. Վենը շատ մտատանջվեց և ի վերջո հասկացավ. դա արագիլների հսկայական երամն էր, որ սովորականի պես ամեն տարի աշնանը չվում էր հարավ ձմեռելու:

Բ. Վենը տանել չէր կարողանում Արա Գիլներին՝ այդ անդադար թռչուններին, որոնք երբեք տեղում տիտիկ չեն անում. մեկ Գերմանիայում՝ աշտարակի գլխին են, մեկ էլ տեսար՝ Աֆրիկայում՝ բառբաքի կատարին: «Գուցե ես էլ չըվեմ,— ինքն իրեն հարց էր տալիս Բ. Վենը,— գուցե թողնեմ ամեն ինչ, գլուխըս առնեմ, կորչեմ գնամ Չադ լիճը»: Այսպես, երեկոյան Բ. Վենը, ուրիշ շատ երեկոների նման, վերադարձավ իր քարայրն ու մնաց անշարժ՝ դեղին աչքերը մթան մեջ չռած, սպասելով, որ երամը անցնի-գնա:

Արա Գիլների շարանը ձգվեց քարայրի առջևով: Մի հարյուր հատ կլինեին, մեծ աղմուկ-աղաղակ էին բարձրացրել, որովհետև շատ թեթևսոլիկ թռչուններ են և նույնիսկ թռչելիս ոչ մի վայրկյան չեն դադարում բլբլացնել: Բ. Վենը նայում էր ներքևում հոսող սպիտակ փետուրների գետին և շարունակ ճպճպացնում փոսփորափայլ աչքերը, ինչպես անում են ապտակ ուտելուց: Վերջապես անցան նաև ուշացած Արա Գիլները, և հետո, փառքդ շատ, տեր Աստված, էլ ոչ մեկը չերևաց:

Բ. Վենը թեթևացած շունչ քաշեց, մի քիչ էլ սպասեց ու, համոզվելով, որ Արա Գիլների երամն արդեն հեռու է, դուրս եկավ քարայրից: Բայց ճիշտ այն պահին, երբ ուզում էր թռչել, ինչ-որ մեկը նրա շալակը թռավ մի այնպիսի ուժով, որ քիչ էր մնում գետին փռվեր: Երբ մի կերպ ուշքի եկավ, տեսավ, որ դա բավականին պստիկ, ջահել Արա Գիլ է, ու շատ շփոթված է երևում: Մի պահ անց Արա Գիլը հարցրեց.

— Ո՞ւր է: Ո՞ւր գնաց:

— Ո՞վ:

— Իմ երամը, Արա Գիլների երամը:

— Ի՞նչ իմանամ, արդեն մի քանի ժամ կլինի, որ անցել են:

Երբևիցե տեսե՞լ եք լաց լինող Արա Գիլ: Ես՝ ոչ, բայց շատ լավ պատկերացնում եմ: Պստիկ Արա Գիլը խեղդվում էր արցունքից և չէր կարողանում զսպել հեկեկոցը: Ախ ու վախերի արանքում պատմեց գլխով անցածը. հայրիկի, մայրիկի, եղբայրների ու քույրերի հետ թռչելիս Գիլիկը (այդպես էր կոչվում այդ օրիորդը) անզգույշ շարժում էր արել, և թևը դուրս էր ընկել: Այդպես ետ էր մնացել,



Նկարը՝ ՌՈԲԵՐՏ ԲԱԼԱՅԱՆԻ

ըհը՛, ըհը՛, ըհը՛, և եթե այդ պահին չգտներ փրկարար ելուստը, ըհը՛, ըհը՛, ըհը՛, անկասկած ընկնելու էր ցած, ըհը՛, ըհը՛, ըհը՛, ու խժռվելու էր, ըհը՛, ըհը՛, ըհը՛, այն գազանների կողմից, ըհը՛, ըհը՛, ըհը՛, որոնց համար Արա Գիլը ամենահամեղ խորտիկն է, ըհը՛, ըհը՛, ըհը՛:

Բ. Վեհն ամբողջ այդ ճլուլթից միայն մի բան հասկացավ. Գիլիկը չէր կարող շարունակել թռիչքը և միաժամանակ ստիպված էր մնալ քարայրում, խանգարելով, այսպիսով, նրա թանկագին անդորրը: Եվ արդեն ուզում էր պատասխանել՝ «Բայց ես ի՞նչ կարող եմ անել: Ինչո՞ւ հյուր չես գնում քո հորեղբորորդի Կըռ Ունկին: Նրանք մեծ-մեծ բներ ունեն, մինչդեռ իմը, տեսնում ես, միայն այս փոքրիկ քարայրն է, որ առանց այդ էլ կիսում եմ Չըղ Ջիկի հետ», ու քարայրի խորքից նրան հասավ Չըղ Ջիկի ձայնը.

— Բ. Վեհ, հիմարություն մի արա, բախտդ բերել է, երջանիկ առիթը ձեռքիցդ բաց մի թող:

— Ի՞նչ առիթ:

— Երջանիկ, երջանիկ առիթ մենության ու մարդատյացության վերջ տա-

լու, քարայրում մի նոր էակ ընդունելու՝ ջահել, սպիտակ, լուսավոր, արևային:

— Ախր ես գիշերաշրջիկ եմ, և հետո իմ տարիքում սովորությունները չեն փոխում:

— Կտեսնես, որ կփոխես:

— Դու այդպես ես խոսում, որովհետև գլխիվայր ես:

— Լավ է գլխիվայր, քան անգլուխ:

Մի խոսքով, կարճ կապենք, Գիլիկը ոչ միայն մնաց քարայրում, սպասելով լրիվ ապաքինման, այլ նաև, ինչպես գուշակել էր Չըղ Ջիկը, իսկապես արդեն ոչ թե գիշերները, աստղերի ու լուսնի հայտնվելուն պես, այլ արևի լույսով ողողված ցերեկները ոչ թե կեղտոտ, սև ու փրչոտ մկներ էր բռնում, այլ թարմ, արծաթափայլ ձկներ: Նույնիսկ ձայնը խռպոտ փնթփնթոցից փոխվել էր մեղեդայինի ղունղունոցի: Ի՞նչն էր արմատական այդ փոփոխության պատճառը: Պարզ է՝ սերը: Բ. Վեճը սիրահարվել էր Գիլիկին: Նրա կողքից ոչ մի վայրկյան չէր հեռանում: Սովորական էր դարձել նրանց միասին տեսնելը Գիլիկի սիրած վայրերում՝ գետերի մոտ, լճերի ափին, մեկը՝ սպիտակ, պլարկոտ, նրբակազմ, երկար ու բարակ ոտքերով և երկար կըտուցով, մյուսը՝ մռայլ, կարճլիկ ու ամրակազմ, գնդի նման կլորիկ, փոքրիկ կեռ կտուցով ու նոտարի հսկայական ակնոցով:

Բ. Վեճը թեև սիրահարված էր, այնուամենայնիվ վախը դեռ սրտումն էր, և այն պահերին, երբ Գիլիկը նրան չէր կարող լսել, ասում էր իր հավատարիմ Չըղ Ջիկին.

— Գիտե՞ս, այս Գիլիկը խորամանկի մեկն է, մատդ բերանը դնես, թևդ էլ հետը կտանի:

Չըղ Ջիկը, սակայն, պատասխանում էր.

— Թևդ էլ տանի՝ քեզ քիչ է:

Բ. Վեճն էլ փնթփնթում էր.

— Բա ինչ, դու այդպես ես խոսում, որովհետև միշտ գլխիվայր ես ու ամեն ինչ հակառակն ես տեսնում:

Չըղ Ջիկն էլ, իր հերթին, պարտքի տակ չէր մնում.

— Աստված տա, որ կյանքումդ գոնե մի անգամ էլ դու հակառակը տեսնես:

Մինչդեռ Գիլիկը ոչ միայն ապաքինվել էր, այլև մեծացել ու գեղեցկացել: Առաջվա պես ապրում էր Բ. Վեճի քարայրում, բայց հաճախ խորհրդավոր անհայտանում էր, այնպես որ ի վերջո Բ. Վեճի խանդը արթնացավ, վերջինս սկըսեց հետևել նրան ու շուտով հայտնաբերեց, որ իր հյուրը ժամադրության է գընում մի Արա Գիլի մոտ, որը հայտնի էր իբրև անուղղելի կնամոլ: Բ. Վեճը համարձակություն ունեցավ կշտամբելու Գիլիկին, լեզուն չորանար՝ այդ բանն արած չլիներ, քանի որ հետևյալ պատասխանն ստացավ.

— Դե, փակիր կտուցդ, իմ գործն է, թե ով ինձ դուր կգա:

Վշտահար Բ. Վեճը սիրտը բացեց Չըղ Ջիկի մոտ: Բայց պատասխանը սովորական էր.

— Ամեն ինչ տեսնելով այնպես, ինչպես տեսնում եմ, այսինքն գլխիվայր, պիտի քեզ ասեմ, որ շատ բախտ ունես: Գիլիկը դավաճանո՞ւմ է քեզ, հետո՞ ինչ, չեղածից հո լավ է:

Հաշտված այն մտքի հետ, թե ինչ-որ բան, թեկուզ և դավաճանությունը, չեղածից լավ է, Բ. Վեճն ի վերջո համաձայնեց նաև բույն սարքել Գիլիկի և Արա Գիլի համար, որպեսզի սրանք մեծացնեն իրենց ձագերին: Այսպես, խեղճ ծերուկին կարելի էր տեսնել անդադար ետ ու առաջ անելիս, թռչելիս՝ բերանում ծըղոտ, թղթի կտորներ, բմբուլ, փոքրիկ ճյուղեր, եղեգի ցողուններ, մի խոսքով, ամեն տեսակի շինանյութ, որ անհրաժեշտ էր ձագերի բույնն ավելի ամուր ու հարմարավետ դարձնելու համար:

Բայց Չըղ Ջիկը համառորեն շարունակում էր կրկնել.

— Մի նվնվա: Այսպես գոնե ապրում ես: Իսկ առաջ ի՞նչ էիր՝ սատկածի մեկը:

Բույնն արդեն պատրաստ էր. հսկայական մի բույն, որ ժայռի ելուստի ծայրից կախված էր անդունդի վրա: Եվ երբ հինգ Արա Գիլիկներ դուրս եկան ձվերից և աղմուկ-աղաղակ դրին, կտուցները բնից դուրս վեր ցցած, ամբողջ ուժով կերակուր պահանջելով, խեղճ ծերուկ Բ. Վեճն ստիպված էր հազար կըտոր լինել, որպեսզի կարողանա սրանց տեսակ-տեսակ որդ, խխունջ ու տարբեր միջատներ հասցնել: Իսկ Չըղ Ջիկը թե՝

— Այ, հիմա իսկապես ընտանիքի տեր ես: Էլ ի՞նչ ես ուզում: Քեզ պես երջանիկները քիչ են աշխարհում:

Օրերից մի օր Բ. Վեճը լսեց Գիլիկի՝ հապճեպ ասված խոսքերը.

— Դե, թանկագին Բ. Վեճ, եկավ մեր հրաժեշտի պահը: Թևերումս մի տեսակ

դող եմ զգում, ոտքերումս՝ ինչ-որ անհամբերություն, ինչ-որ թրթիռ: Զգում եմ, որ ձագերս ու ես պատրաստ ենք չվելու: Իսկ դո՞ւ, ի՞նչ ես անելու: Կգա՞ս մեզ հետ, թե՞ կմնաս այստեղ:

Բ. Վեճը զարմացավ.

— Ո՞նց թե, դու ուզում ես հեռանա՞լ:

— Իհարկե, մի՞թե պարզ չէ, ես այստեղ այլևս անելիք չունեմ:

— Եվ ոչ մի զգացմո՞ւնք, չեմ ասում սեր, բայց գոնե երախտագիտություն պետք է զգաս, թե՞ ոչ:

— Միակ զգացմունքը, որ ունեմ, հընարավորին չափ շուտ թռչել-գնալու հսկայական ցանկությունն է:

— Փորձիր զսպել քեզ:

— Անհնար է: Դա իմ ուժերից վեր է:

Բ. Վեճը, թեև հույսը կտրած, մի վերջին փորձ արեց.

— Ախր ո՞ւր ես գնում: Գոնե գիտե՞ս, թե ուր ես գնում:

Գիլիկը պատասխանեց.

— Մենք՝ Արա Գիլներս, երբեք չգիտենք, թե ուր ենք գնում: Պետք է գընանք և վերջ:

— Բայց ձերոնցից նրանք, որ վերադառնում են, քեզ պետք է ասած լինեն գոնե, թե որտեղ են եղել:

Գիլիկն անորոշ պատմեց.

— Ասում են, որ հեռվում շատ մեծ մի լիճ կա, վերևն էլ՝ երկնքում, հսկայական մի լույս: Լճում շատ-շատ թռչուններ կան, նրանք ճախրում են ջրի վրա, մեծ ձկներ են բռնում, արևկող անում, մի խոսքով, երջանիկ են:

— Իսկ ես, ի՞նչ ես կարծում, ես է՞լ երջանիկ կլինեմ այնտեղ:

— Իմ կարծիքով, դու միայն մթան մեջ կարող ես երջանիկ լինել, գիշերը, երբ մկան որսի ես գնում և հետո վերադառնում քարայրդ՝ հետդ մի մեծ մուկ բերելով, իսկ Չըղ Ջիկն այն պատրաստում է, և դու ուտում ես:

Ի՞նչ անել: Չըղ Ջիկը բարբառեց իր խորհուրդը.

— Լավ է գեթ մի օր Արա Գիլ լինել, քան հարյուր տարի Բ. Վեճ:

Գիլիկն արդեն չվելու պատրաստություն էր տեսնում: Բ. Վեճը հայտնեց իր որոշումը. ինքն էլ է գնում: Ժամփա ընկան արևածագին: Ելուստից առաջինը պոկվեց-թռավ Գիլիկը, հետո նրա ձագերը և վերջում՝ Բ. Վեճը: Չըղ Ջիկը մնաց քարայրում, բայց խոստացավ, որ կհասնի նրանց, հենց որ լուր ստանա: Ինչպես միշտ, գլխիվայր կախված, գոռաց Բ. Վեճի ետևից.

— Միշտ ես անում, որ գնում ես. կյանքը մի անգամ է տրվում:

Թռավ, թռավ, թռավ Բ. Վեճն ու շուտով զգաց, որ թռչելն իր բանը չի: Գիլիկի թևերը երկար, իրենը՝ կարճ, նրա թոքերը մեծ, իրենը՝ փոքր և նեղ, նրա տեսողությունը հրաշալի, մինչդեռ ինքը կուրանում էր արևից: Մի առավոտ էլ, երբ թռչում էին արևի տակ պսպղացող անծայրածիր ծովի վրայով, Բ. Վեճը մի փոքրիկ կղզի տեսավ ու սկսեց աղաչել Գիլիկին.

— Ինչ կլինի, իջնենք, մի քիչ հանգըստանանք այս խութի վրա:

— Իջնում ես՝ իջիր, մենք շարունակում ենք:

— Ախր հոգնել եմ:

— Ավելի վատ քեզ համար:

Գիլիկի անսիրտ վերաբերմունքից Բ. Վեճը վճռական դարձավ: Առանց հրաժեշտ տալու իջավ խութի վրա, տխուր հայացքը հառած ծովին՝ մի քանի ժամ հանգստացավ, հետո նորից թռավ, բայց այս անգամ արդեն ետ՝ իր քարայրի ուղղությամբ:

Ամեն ինչ գտավ այնպես, ինչպես թողել էր: Չըղ Ջիկը, որ գլխիվայր կախված էր առաստաղից, գոռաց.

— Ամբողջ կյանքումդ զղջալու ես, որ լիճը չհասար:

Բ. Վեճը չպատասխանեց, զննեց քարայրը, մի երկար սպիտակ փետուր գըտավ, ըստ երևույթին Գիլիկի թևից էր ընկել: Կտուցով վերցրեց ու ելավ-կանգնեց ելուստի վրա: Ահա անփոփոխ մնացած հսկայական այն բույնը՝ ծղոտով ու բմբուլով լեցուն: Բ. Վեճը բացեց կտուցը, և սպիտակ փետուրն օրորվելով իջավ անդունդը: Հետո բույնը շրջեց: Նրա հարվածից այն ճոճվեց, մի ակնթարթ մնաց ելուստի ծայրին, հետո օդում պըտըտվելով ցած ընկավ ու աչքից անհետացավ: Արդեն երևում էր լուսինը, նրա արծաթե լույսի մեջ երևաց նաև անծայրածիր հարթավայրը, ուր Բ. Վեճը սովորաբար իջնում էր որս անելու:

— Լավ, գնամ մի մուկ բերեմ վաղվա համար,— դիմեց նա Չըղ Ջիկին:

Գլխիվայր կախված Չըղ Ջիկը հարցրեց.

— Ինչպե՞ս ենք պատրաստելու:

— Կտապակենք,— պատասխանեց Բ. Վեճը ու թռավ գնաց:

ՆՈՐԱՅՐ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

Սիրտ իմ, կուզենամ,
որ կյանքում լինես
ծովի խորությամբ:
Ծովի իմաստը
խորության մեջ է,
ոչ թե անարդյունք
ալեկոծության:

ՆԵՐՍԵՍ ԱԹԱԲԵԿՅԱՆ

# Կարմիր նժույգը

Նժույգ էր կարմիր,
Ազին իր՝ կարմիր,
Ու բաշը թավ էր,
Ու դարձյալ կարմիր:
Թռում-թռչում էր
Հուր ու բոց հագած,
Ասես թռչուն էր
Իրիկնաժամին:

Թռում-թռչում էր
Երգի պես թեթև,
Ձայնը հնչում էր
Յոթ սարի հետև:
Յոթ սարի հետև
Իր քույրը կապույտ
Սպասում է՝ երբ
Կհասնի իր մոտ:
Կհասնի, կգա,
Կկանգնի կողքին,
Բաշով կշոյի
Աչքերն իր կրկին:

... Գնաց Կարմիրը,
Գնաց ու թափից
Երգ դառավ—
Թռավ կարմիր քարափից...
Իսկ կապույտ քույրը
Սպասում է դեռ
Երկնքի կարմիր տեղատարափին,
Իսկ կապույտ քույրը
Կարոտում է դեռ
Իր տխրության յոթ սարերից անդին...

Տատիս սենյակում ձվաձև շրջանակի մեջ մի ոչ մեծ գունավոր նկար կար, որից ես ինչ-որ անբացատրելի վախ էի զգում և երկար չէի կարողանում նայել: Գլխաշորով մի աղջիկ, աչքերում սարսափ, շալակած տանում էր փոքր եղբորը: Ես ոչ մեկին չէի հարցնում, թե ով է աղջիկը, անունն ինչ է և ինչու է այդպես սարսափած փախչում: Չէի հարցնում, քանի որ հաստատ համոզված էի, թե փախչում են ֆաշիստներից կամ թուրքերից, քանի որ իմ գիտակցության մեջ դրանք նույնն էին:

Երբ ցուրտ էր լինում, ցերեկները մեծ մասամբ տանն էի մնում՝ տատիս հետ: Ճիշտ է, դուրս գալիս էի, ձնագնդի խաղում, ձնեմարդ շինում, կենտ դահուկ ճարած Արամ եղբորս ետևից վազում բավական հեռու, բայց մեկ է՝ ցուրտը տուն էր բերում: Իսկ երեկոյան համարյա դուրս չէինք գալիս, մեկ՝ որ անմարդ էին փողոցները, լուսաքողարկման պատճառով՝ մութ, մեկ էլ ահ ունեինք գայլերից: Չէ՞ որ գիշերները ոռնոցների ձայներ էինք լսում և չգիտեինք՝ քաղցած շնե՞րն են, թե Զանգվի ձորից բարձրացած գայլերը:

Ասենք, դուրս գալու պատճառ էլ չունեինք: Կամ պառկում էինք անկողնում, կամ մի թաքուն հույսով կծկվում սառը վառարանի մոտ ու տատիս պատմությունները լսում գաղթի օրերից: Իսկ նա պատմում էր ու պատմում, թե իր որդիներին ինչպես է բերել այդ ճամփաներով, ինչպես են բերել հնգամյա Ազնիվ մորս՝ մերթ շալակած, մերթ ինչ-որ մեկի կովի մեջքին դրած: Պատմում էր իրենց այգու մասին, որ մնացել էր թուրքին, մեկ-մեկ հիշում էր բոլոր ծառերը: Պատմում ու լռում էր, և դեմքին ավելի էին շատանում խորշոմները: Եվ զարմանալիորեն քիչ էր խոսում պատերազմի մասին: Իսկ աշխարհում պատերազմ էր: Պատերազմի մասին հարցնում էր ուրիշներից, քաղաքից երեկոյան տուն վերադարձածներից: Չէ՞ որ այն ժամանակ մեր Արաբկիրում ռադիո չկար և թերթերն էլ հազվագյուտ էին: Զարուհի տատըս գրագետ էր, շատ կարդացած, և շատ էր ցավում, որ թերթ չէր ճարվում: Իսկ եթե մերոնք քաղաքից թերթ էին ճարում ու բերում, կարդում էր ծայրեծայր ու մի քանի անգամ: Բայց մեկ է՝ մեզ հետ պատերազմի մասին քիչ էր խոսում, ավելի շուտ պատմում էր գաղ-

ԳԵՎՈՐԳ ԴԵՎՐԻԿՅԱՆ

# Մեր հույսի պարտեզը

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



թից ու դրան հաջորդող տարիներից, երբ ապրել էին Թբիլիսիում ու Կիսլովոդսկում, բայց միշտ ասում էր, թե ինչ ենք անելու, երբ մեր Ալեքսան ու Մեսրոպ քեռիները, այսինքն՝ իր որդիները, պատերազմից տուն վերադառնան: Ու քանի որ սենյակը վարձով էր, գալուն պես տուն էին կառուցելու, և այն հողամասում, որ Ալեքսան քեռին էր ստացել՝ ծառեր էին տնկելու: Մենք հաճախ էինք գնում այդ հողամասը, ուր նա չէր հասցրել որևէ գործ անել և ուր միայն քարեր էին: Բայց տատս ասում էր, որ այդ քարերը շուտով կմաքրենք, հողը կըփորենք և ծառեր կտնկենք: Եվ ցույց էր տալիս, թե որը՝ որտեղ, ամեն ինչ հեռվում թողած այգու նման էր լինելու: Տատըս որոշել էր նաև ածուների տեղը, և մեզ համար պարզ էր, թե որ ածուի մեջ ինչ էր ցանվելու: Նա, իհարկե, հենց պատշգամբի դիմաց որոշել էր նաև թթենիների տեղը: Առանց թթենու չէր էլ պատկերացնում պարտեզը: Չէ՞ որ ամեն ինչ էրգրի նման էր լինելու, իսկ պարտեզի վերջում էլ՝ խաղողի վազերը:

Իսկ մենք՝ քարերին նստած, ոչ միայն երազում էինք այդ ամենը, այլև շատ իրական տեսնում, չէ՞ որ մեր Զարուհի տատի ասածը մեզ համար օրենք էր. այդպես էինք տեսել ու սովորել մեր ծնողներից: Եվ եթե նա ասում էր, թե հաղթանակը մոտ է և պարտեզում շուտով ծառեր կտնկենք, անվերապահորեն հավատում էինք: Իսկ թե ինչու էր խուսափում պատերազմի մասին խոսելուց, իմացա հետագայում: Մեր հարևանուհին մի օր, երբ սկսեց պատմել, թե ինչ է լսել ֆաշիստների գազանությունների մասին, տատս նրան նայեց աղերսանան

հայացքով և խնդրեց.

— Կարծում ես չգիտե՞մ, բայց մի պատմիր:

— Ինչո՞ւ,— զարմացավ զրուցակիցը:

— Ախր երկու տղա եմ բանակ ուղարկել,— և աչքերը լցվեցին,— կուրանար նրանց մոր աչքերը,— ու դեմքը շրջեց: Մեր հարևանուհին, որի ամուսինը նույնպես բանակ էր գնացել, հեծկլտաց:

Տատս առանց շրջվելու, կարծելով թե հեռացել եմ, խուլ ձայնով շշնջաց.

— Երեխաների մոտ կարիք չկա, թող չիմանան, թե քեռիները փորձանքի մեջ են, մեղք են: Ես ջահել-ջահել իմ երեխեքի հետ այդ ամենը տեսա, թուրքն իր գազանություններով պակաս չէր ֆաշիստներից: Նա մեր տուն ու տեղ խլեց:

Հետո շտկվեց, և աչքերի մեջ հավատ կար:

Հետո շոյելով գլուխս, մեղմորեն ասաց.

— Կարիք չկա մեծերի խոսքերին ականջ դնելու, վազիր խաղա:

Իսկ ես չշտապեցի վազել իմ խաղընկերների մոտ, ինչ-որ բանից խիստ սազդված էի: Ուրեմն՝ տատս մեզ պատմում է ապագա պարտեզի մասին, իսկ ինքը ողջ օրը քեռիների մասին էր մըտածում: Ուրեմն՝ նրանք փորձանքի մեջ են, ու մեզ ոչինչ չի ասում: Ու ես ավելի ահով հիշեցի տատիս սենյակի այն նկարը՝ սարսափով փախչող երեխաներին: Ուրեմն նրանք էլ են փորձանքի մեջ:

Գնացի խաղալու, որ տատիս ասածը կատարեմ, բայց վազելու տրամադրություն չէր մնացել:

Իսկ երեկոյան, երբ մայրս, քաղաքից գալով, տատիս ասաց, թե մեր զորքերն էլի ինչ-որ քաղաք են ազատագրել, տատիս դեմքը փայլեց և նայելով իմ կողմը՝ ասաց.

— Երեխեքի մոտ միայն լավ լուրեր հայտնեք, մեղք են:

Թեև ամռան երեկոներին տատս քիչ էր պատմում, քանի որ խաղալուց հոգնած գալիս ու քնում էինք, սակայն մի անգամ տեղավորվեց Կիսլովոդսկից հետները բերած կիսամաշ թավշապատ բազկաթոռի մեջ, ու ես հասկացա, որ ցանկանում է բան ասել: Իսկույն նստեցի կողքի աթոռակին ու պատրաստվեցի լըսելու: Նա ձեռքը դրեց գլխիս ու լռեց սպասողական: Դա նշան էր, որ հեքիաթը ես էի ընտրելու:

— Ոսկեծամը,— ասացի ես:

— Իմ մտքինն էլ էդ էր,— ժպտաց նա ու սկսեց.

«Շատ հին ժամանակ մի թագավոր կար: Էս թագավոր լաճ-տղա չուներ: Մի օր առավ իր վեզիրին, դերվիշի հալավ հագավ, ու գնացին աշխարհը շրջելու...»:

Ես, իհարկե, լավ գիտեի, որ նրանք հանդիպելու են մի դերվիշի, որը ճար է անելու թագավորի վշտին, և զույգ արու զավակներ էին ծնվելու:

Լսում էի շարունակությունն ու անհամբեր սպասում, թե երբ է տղաներից մեկը, որին իր մոտ է տանում դերվիշը, ոսկե աղբյուրի ջրով գլուխը լվանալու և մազերը ոսկի դարձնելու:

Վերջապես եկավ և այդ պահը: Հետո նա ծպտվելու համար գլխին ոչխարի փորի կաշին էր քաշում ու այդպես ինչ-որ երկրի թագավորի մոտ գնում, և թագավորի կրտսեր աղջիկը նրան էր փեսացու ընտրում, շարժելով հոր զայրույթը: Ես այդ բոլորը թեև լավ գիտեի, բայց անհամբեր սպասում էի հեքիաթի այն տեղին, երբ նա մի քնձոտ ձիով կռվի դաշտ է գնում, սակայն կանչում է դերվիշի կախարդական ձիուն ու կոտորում թագավորի թշնամիներին: Երբ տատս այդ տեղին հասավ, ուղղվեց նստած տեղում ու շարունակեց.

— «Քաչալ տղեն սև ձիու մազը կրակ տվեց: Ջին իրա սարք-սուրքով եկավ դիմացը կանգնեց: Քաչալը թռավ թամբին ու քշեց կռվի մեջ: Մտավ թե չէ՝ գնաց եկավ, աջ զարկեց, ձախ զարկեց, դես զարկեց, դեն զարկեց մինչև արուն ելավ, դիակներ տարավ»:

Հետո տատս լռեց ու կիսաձայն ասաց.

—Չէ, ոռւս լավ կռվող է, Քաջ Անդրանիկի կամավորները ռուս զինվորների հետ մեզ փրկեցին: Կռիվ շուտով կըպրծնի ու Ալեքսան-Մեսրոպ կգան:

Իսկ ես հեքիաթի շարունակությանն էի սպասում: Դա զգաց տատս ու սթափվելով՝ շարունակեց: Երեք անգամ Ոսկեծամը կռվի դաշտ էր իջնում ու երեք անգամ էլ կոտորում թշնամուն, հետո բացում գաղտնիքն ու ամեն ինչ պատմում թագավորին: Ապա տատս հեքիաթը շատ հանդիսավոր ավարտեց. «Նրանք հասան իրենց սրտի մուրազին, մենք էլ հասնենք մեր սրտի մուրազին»: Հետո շոյեց գլուխս ու ավելացրեց. «Թող հաղթանակ լինի, բոլորը տուն գան ու նրանց հետ էլ իմ Ալեքսան-Մեսրոպ»:

Ու ես հաստատ համոզվեցի, թե հաղ-

թանակը շատ է մոտ, չէ՞ որ հենց այդ օրվա առավոտյան կողքի՝ 19-րդ փողոցում տեսել էի, թե որքան ոսկեմազ երիտասարդներ էին շարքով քայլում ու ռուսերեն երգում: Մենք հաճախ էինք նրանց տեսնում, մեծերն ասում էին, թե վարժվում են, որ կռվի դաշտ գնան ու ֆրիցներին ջարդեն: Իսկ որ այդքան ոսկեծամ երիտասարդներ էին գնալու, պարզ է, հաղթանակն էլ շատ շուտ էր լինելու:

Բայց մենք էլ էինք ցանկանում շուտ մեծանալ ու կռիվ գնալ:

Դրա համար ամեն օր կանգնում էինք պատի մոտ, որի վրա խազ էինք քաշում ու հասակներս չափում: Բայց ես մի ուրիշ գաղտնիք էլ ունեի, որն առայժմ միայն իմն էր. երեկոյան փողոցի անկյունի ծորակի ջրով լվացվում էի, գլուխս թրջում, իսկ առավոտյան հայելու մեջ նայում էի՝ մազերս չե՞ն դեղնել: Չէ՞ որ շատ էի ցանկանում Ոսկեծամ դառնալ ու քեռիներիս օգնության հասնել:

Ու երբ հաջորդ առավոտ կրկին նայեցի հայելուն, և տեսնելով, որ մազերս նույն սև-սևն են, համարյա լացակումած տատիս դիմեցի.

— Ոսկի ջրով աղբյուրը որտե՞ղ է:

— Մեծանաս՝ կիմանաս:

— Ես հիմա եմ ուզում մեծանամ, որ ֆաշիստների ու թուրքերի հետ կռվեմ:

— Մինչև մեծանաս՝ կռիվը վաղուց պրծած կլինի, քեռիներդ էլ տուն եկած կլինեն:

— Էլ ի՞նչ եմ անում ոսկի աղբյուրի ջուրը,— քիչ մնաց լաց լինեի, որ այդպես ամեն ինչ առանց իմ մասնակցության էր լինելու:

— Պարտեզը կջրենք, որ ծառերը շուտ մեծանան ու երկրում թողածի նման լինեն:

— Իսկ թուրքերին թողած մեր պարտե՞զը:

— Էլի մերը կլինի, դու շուտ մեծացիր, որ տեր դառնաս,— ասաց նա ախ քաշելով ու գլուխս շոյելով:

Այս լսելով, ես ուրախությունից դեպի պատը վազեցի ու ձիգ կանգնեցի խազի տակ: Թեև խազը չէի տեսնում, սակայն ինձ թվում էր՝ երեկվա համեմատ ահագին մեծացել եմ:

Հետո սենյակ մտա ու արդեն առանց ահի նայեցի փախչող երեխաների նկարին: Չէ՞ որ շուտով նրանք էլ էին փրկվելու ֆաշիստներից ու թուրքերից:

**ՍԱՐԳԻՍ ԿԱՐԵՅԱՆ**

# Զանգվի ձորում

Մենք քայլում ենք, մեր առջևից
թիթեռներ են թռչում
և իջնում մեր հետքերին:

Երեխաներ, թող փուշն էլ ծակի,
եղինջն էլ ծակի,
թող փոքրիկ Գոռն էլ լաց լինի,
որ շուտ մեծանա,
դուք, երեխաներ, մեծ եք,
դուք երգեցեք՝
թող փուշն էլ ծակի,
եղինջն էլ ծակի,
որ շուտ մեծանաք...

Այս ո՞վ է այստեղ ակացիա կտրել,
այս ո՞վ է այստեղ
կացնով եկել, դանակով եկել,—
հիմա նրան
թռչունները, ծառերը տարել են,
կապել ժայռին,
շղթաներով կապել,
ամուր կապել,
հիմա նա լաց է լինում,
աղիողորմ լաց է լինում
ակացիայի համար,
հիմա նա ասում է՝ թող չլինի
ոչ մի կացին, որ ծառ է կտրում,
իսկ հիմա դուք ակացիայի
սերմերը հավաքեք, տվեք հողին,
որ այս ակացիան ծնվի
ձեզ պես նոր ու ճկուն,
երեխաներ, ձեզ պես նոր ու ճկուն...

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ





# ՃԱՆԱՉԻ՛Ր ՔՈ ՀԱՅՐԵՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**

բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## Տրդատ Առաջին Արշակունի

Հնում, ինչպես գիտենք, թագավորական գահը ժառանգական էր: Վախճանված թագավորի գահին բազմում էր նրա որդին: Եթե թագավորը զավակ չուներ՝ գահ էր բարձրանում եղբայրը կամ որևէ ազգական: Հաճախ այնպես էր լինում, որ միևնույն թագավորական տան անդամներ իշխում էին մի քանի երկրներում: Ինչպես ասվել է, պարթև Արշակունիները հայ Արտաշեսյաններին ազգական էին, նրանք հայոց գահի ամենաօրինական տերն իրենց էին համարում:

Պարթևների Վաղարշ Առաջին թագավորը հայտարարեց, որ Հայաստանը անկախ պետություն է Արշակունիների տան իշխանության ներքո: Դա հայերի ուզածն էր: Կարևոր է հիշել նաև, որ հայերն ու պարթևները իրենց սովորություններով, կենցաղով շատ նման էին, ապա՝ հայ և պարթև շատ իշխանական տներ կապված էին խառն ամուսնություններով: Վաղարշ Առաջինը իր եղբայր Տրդատ Արշակունուն հռչակեց հայոց թագավոր: 52 թվականին Տրդատը պարթևա-հայկական զորքով մտավ Հայաստան: Հայ ժողովուրդը և մեծամեծները նրան ցնծությամբ ընդունեցին՝ համարելով իրենց հին թագավորության (Արտաշեսյան) օրինական ժառանգը: Հռադամիզդը փախավ Վրաստան: Փախչելիս իր հղի կնոջը՝ Զենոբիային, հենց նրա խնդրանքով սրով խփեց և ծանր վիրավոր՝ գցեց Արաքս գետի արագահոս ջրերի մեջ: Հայ հովիվները փրկեցին Զենոբիային, տարան գյուղ, բուժեցին նրան և հետո տեղափոխեցին Արտաշատ: Հայոց Տրդատ Առաջին թագավորը սիրով նրան տեղ տվեց հայոց արքունիքում:

Հռադամիզդը 53 թ. մեծ զորքով վերադարձավ Հայք և կրկին գահ բարձրացավ: Տրդատն իր զորքով նահանջեց: Սակայն հայ իշխանները ապստամբեցին Հռադամիզդի դեմ, և սա նորից փախավ Վրաստան ու այս անգամ փորձեց տիրանալ իր հոր՝ վրաց թագավոր Փարսամանի գահին: Շուտով նա սպանվեց հոր ձեռքով, և այդպիսով ասպարեզից դուրս եկավ հայոց գահի այդ համառ հավակնորդը:

54 թվականին Տրդատը նորից Հայաստանում էր և շարունակում էր գահակալել:

Բայց հռոմեացիները ոչ մի կերպ չէին համակերպվում այն մտքի հետ, որ Հայաստանում թագավորում է Մեծ Հայքի անկախությանը նախանձախնդիր Արշակունի մի թագավոր:

Բուն Ադվանքում (Քուռ գետի ձախ ափ) թագավոր էր հռչակվել Պարթևստանի Վաղարշ թագավորի մյուս եղբայրը՝ Բակուր Արշակունին, և այդպես ստեղծվել էր հայ-պարթևա-աղվանական ամուր դաշնակցություն Հռոմի դեմ:

54 թվականին Հռոմի կայսր դարձավ Ներոնը (իշխել է մինչև 68 թ.), որը նպատակ դրեց խորտակել այդ դաշնակցությունը: Հռոմի այդ հռչակավոր կայսրը զորք ուղարկեց Հայաստան զորավար Դոմիտիոս Կորբուլոնի ղեկավարությամբ: 57 թ. Կորբուլոնի լեգեոնները մր-



տաՆ Հայք, և սկսվեց հայ-հռոմեական պատերազմ: 59 թ. հռոմեացիները շարժվեցին դեպի Արտաշատ: Մի շարք կատաղի մարտեր տեղի ունեցան:

Պարթևների Վաղարշ թագավորը այդ ժամանակ պատերազմում էր հարևան մի երկրի դեմ և չկարողացավ օգնել հայերին: Հայաստանի լեռներում հայերը փոքրը զորամասերով հարձակվում էին հռոմեացիների վրա: Սա հայոց զորքերի պատերազմելու այն հին եղանակն էր, որ նրանք կիրառում էին Արարատի թագավորության օրերում, Տիգրան Մեծի և այլ ժամանակաշրջաններում: Սակայն ուժերը շատ էին անհավասար, և Կորբուլոնը գրավեց Արտաշատն ու հիմնահատակ քանդեց այն: Ապա ծանր կռիվներից հետո գրավեց նաև Տիգրանակերտը և Մեծ Հայքի թագավոր ձեռնադրեց Հռոմի կամակատար Տիգրան VI-ին (Հրեաստանի թագավոր Հերովդեսի թոռը): Տրդատը փախավ Մծբին: Շուտով Վաղարշը պարթևական մեծ զորքով օգնության հասավ հայերին: Վաղարշը Մծբինում հանդես կազմակերպեց և թագադրեց Տրդատին: Իսկ հռոմեացիները գերադասեցին հաշտություն կնքել: Ներոնը նոր զորք ուղարկեց Հայաստան՝ Կեսեննիոս Պետոսի գլխավորությամբ: 62 թվ. Արածանի գետի ափին գտնվող Հռանդեայում հայ-պարթևական զորքերը հաղթեցին հռոմեացիներին: Եվ Ներոնը համաձայնվեց Տրդատին ճանաչել Մեծ Հայքի թագավոր, բայց այն պայմանով, որ Տրդատը գնա Հռոմ և իր՝ Ներոնի ձեռքից թագ ստանա:

65 թ. Տրդատը մեկնեց Հռոմ: Նրա հետ էին իր կինը, զավակները, եղբայրները, 3000 հայ և պարթև իշխաններից ու զինվորներից բաղկացած շքախումբը: Բոլորը գնում էին ձիեր հեծած, և ինը ամսվա ճանապարհորդությունից հետո հասան Իտալիա: Ներոնը հայոց պատգամավորությանը մեծ շքեղությամբ ընդունեց: Կազմակերպեց գլադիատորների մարտեր, նետաձգության մրցումներ, որի ընթացքում Տրդատը մի նետով երկու ցուլ սպանեց և արժանացավ մրցանակի: Տրդատը հմուտ մարզիկ էր: Նա ոչ միայն դիպուկ նետաձիգ էր, այլ նաև թռիչքի, վազքի վարպետ:

Հռոմ քաղաքի Ֆորում կոչված հրապարակում մեծ ու շքեղ հանդիսությամբ Ներոնը հայոց թագը դրեց Տրդատի գլխին, ապա այդ առթիվ Պոմպեյ քաղաքի թատրոնում ներկայացում տրվեց: Թատրոնը զարդարված էր ծիրանագույն դիպակներով և ոսկով: Ժողովուրդը ցնծությամբ շնորհավորում է Տրդատին: Ապա տրվեց ճոխ խնջույք: Այդպես, Տրդատը հռչակվեց «Մեծ Հայքի մեծ թագավոր»:

Ինչպես տեսնում ենք, Ներոնը, որ ընդհանրապես դաժան կայսր էր, Հայաստանի նկատմամբ բարյացակամ գտնվեց: Նա Տրդատ Առաջին Արշակունուն ճանաչելով հայոց թագավոր՝ վերջ դրեց Հայաստանում մի քանի տասնամյակ տևած գահակալական պատերազմներին: Հայաստանում խաղաղություն տիրեց: Նա Տրդատին տրամադրեց նաև շատ մեծ գումար և կառուցող վարպետներ՝ քանդված Արտաշատը վերականգնելու և ուրիշ նոր կառուցումներ անելու համար:

Այդպես, Մեծ Հայքի համար վերականգնվեց մոտավորապես այն վիճակը, որը ստեղծվել էր մ. թ. ա. 66 թ. Արտաշատում Տիգրան Մեծի և Պոմպեոսի միջև կնքված պայմանագրով: Հռոմը ճանաչում էր իր նկատմամբ բարյացակամ գտնվող Մեծ Հայքի անկախ թագավորությունը:

66 թ. Տրդատն արդեն Հայաստանում էր: Նա թագավորեց մինչև 75 թվականը (այլ հաշվումներով՝ մինչև 88-ը): Տրդատ Առաջինը շինարար թագավոր էր: Նա վերականգնեց Արտաշատը, և, ըստ վկայությունների, նոր Արտաշատն ավելի շքեղ էր ու գեղեցիկ, քան նախքան ավերվելը:

Տրդատի կառուցումներից է Գառնիի ամրոցը: Հին բերդը նա ամբողջովին նորոգեց, ապա նոր ապարանքներ ու այլ շինություններ կառուցեց այդտեղ: Իսկ ամենակարևորը՝ 77 թ. կառուցեց հեթանոսական սյունազարդ տաճար՝ Արարատի թագավորության շրջանի Արդինիի հայկյան տաճարի ճարտարապետական ձևերով: Դա հայկական ճարտարապետության հրաշալի կոթողներից է: Այդ տաճարն ավերվել էր երկրաշարժից և վերականգնվել է 1975 թ.:

70-ական թվականներին հյուսիսից Հայաստանի վրա արշավեցին ալանները: Տրդատ I-ը պատերազմեց նրանց դեմ և հաղթելով, դուրս քշեց երկրից:

Տրդատ Առաջինին հայ ժողովուրդը շատ սիրեց: Նրա մասին գովասանական երգեր ու պատմություններ ստեղծվեցին ժողովրդի մեջ:



Դուք ասում եք.
— Երեխաները մեզ հոգնեցնում են:
Իրավացի եք:
Դուք պարզաբանում եք.
— Պետք է իջնել նրանց մակարդակին:
Իջնել, խոնարհվել, կռանալ, սեղմվել:
Սխալվում եք:
Դրանից չէ, որ մենք հոգնում ենք: Այլ նրանից, որ պետք է բարձրանանք մինչև նրանց զգացմունքները:
Բարձրանանք, կանգնենք մեր ոտքերի ծայրերին, ձգվենք:
Որպեսզի չվիրավորենք:

ՅԱՆՈՒՇ ԿՈՐՉԱԿ

# «Այսօր ինչ սպասար», թե «այսօր ինչ սովորեցիր»

Երբ մեծանամ, անպայման ուսուցիչ կդառնամ: Ահա, դարձյալ նստել ես դասարանում ու երազում ես: Եվ անպայման խոշընդոտներ ես հնարում, որ ավելի հետաքրքիր լինի… Դե, ասենք քո առաջին դասին աշակերտները մեղվի պես բզզում են, բոլորի աչքերը կայծկլտում են: Դու ինչ-որ կախարդական բաներ ես շշնջում, և բոլորը հիացած լսում են քեզ: Իսկ դու ոչ թե բարկացած «2»-ներ ես շարում մատյանում, այլ… Դու գիտես, թե ինչպես կաշխատեիր աշակերտների հետ… որովհետև դեռ աշակերտ ես, դեռ մեկն ես նրանցից, ում և գովում են, և անարդարացի պատժում, ում լսում են երբեմն և… հաշվի չեն առնում: «Եթե մեծերը մեզ հարցնեին, շատ բան նրանց խորհուրդ կտայինք: Չէ՞ որ մենք գիտենք մեր թերությունները և ժամանակ շատ ունենք իրար զննելու. մենք ավելի շատ ենք իրար հետ լինում: Իհարկե, մեկը ամեն բան չի ըմբռնի: Բայց միասին հո կհասկանան: Մենք լռում ենք միայն նրա համար, որ չգիտենք, թե ինչը կարելի է ասել, իսկ ինչը՝ ոչ»: Այսպես մտածում է Յանուշ Կորչակի փոքրիկ հերոսը: Ես այսօր շատ անգամ եմ հիշելու նրան՝ այն մարդուն, որն իր սիրտըն ու հոգին նվիրեց երեխաներին: Կորչակը բժիշկ էր, գրող և մանկավարժ: Նա մահացավ Տրեբլինկայում, ֆաշիստական ճամբարում: Մահացավ երեխաներին ամուր գրկած, որ… գոնե թեթևացնի մահվան սարսափը: Ուզում եմ արտասվել հուզմունքից ու հպարտության այն զգացումից, որ աշխարհում եղել է Կորչակ: Ուրեմն, արի պայմանավորվենք. այսօր քո ուսուցչին խոստումներ ու շնորհավորանքներ պետք չեն: Մենք ուզում ենք, որ դուք հասկանաք իրար: Որ դուք ասեք ուսուցչին այն ամենի մասին, ինչը խանգարում է ձեզ երկուսիդ: Դուք շատ

եք միմյանցից հեռանում, երբ նա կանգնում է դասարանում քո դիմաց: Եվ ուսուցիչդ հաճախ է մոռանում, որ մենք բոլորս նման ենք իրար: Ուսուցչի մոտ շատ բան կա մանկական, իսկ երեխաների մոտ՝ մեծական: Միայն թե իրար հետ դեռ մի ընդհանուր լեզու չենք գտել:

Արի այսօր այդ մասին խոսենք: Ինչպե՞ս անենք, որ դու ուրախությամբ դպրոց գաս (երբ դու երազում ես ուսուցիչ դառնալ, առաջին հերթին այդ մասին ես մտածում), որ դաս սովորելը քեզ համար խնդություն լինի:

Այս օրերին խմբագրությունը բազմաթիվ նամակներ է ստանում դպրոցի վերակառուցման, դժվարությունների մասին: Գրում են և աշակերտներ, և ուսուցիչներ, և ծնողներ: Ու մենք որոշեցինք հրավիրել կլոր սեղան: Խոստովանենք, որ առաջարկությունները, ծրագրերն ու պահանջներն ավելի շատ էին, բայց մենք փորձեցինք ձեզ ներկայացնել այդ զրույցի միայն մի փոքր մասը՝ վստահ լինելով, որ դուք կշարունակեք խոսակցությունը:

ԾՈՎԻՆԱՐ ԱՄԻՐՅԱՆ (Երևան, Կրուպսկայայի անվան դպրոց, 6-րդ դասարան)— Ո՞վ է լինելու մեր դասղեկը. սեպտեմբերի 1-ին բոլոր աշակերտներն այս մասին են մտածում: Իմ կարծիքով, դասղեկը նախ և առաջ մեր ընկերը պետք է լինի, ավագ ընկերը, հետո՝ ուսուցիչը: Եվ ահա դասարան է մտնում դասղեկը: Սկսում է պահանջել, սպառնալ, երբեմն չի էլ խառնվում մեր գործերին... Հազիվ ենք հարմարվում նրա պահանջներին, երբ իմանում ենք, որ դասղեկը փոխվել է: Հետո նորից անհամբեր ենթադրություններ ենք անում՝ ո՞ւմ կնշանակեն: Բայց ինչո՞ւ նշանակեն: Մենք ավելի լավ ենք ճանաչում ձեզ և գիտենք, թե ով կարող է իսկական դասղեկ լինել:

ՍԻԼՎԱ ԱԶՈՅԱՆ (Երևան, № 165 դպրոց, ուսուցիչների համամիութենական համագումարի պատգամավոր)— Վերջերս ՍՍՀՄ լուսավորության մինիստրության դրույթներում էլ այս մասին խոսք էր գնացել: Դե ինչ, կարելի է և փորձել:

Հաճախ դու սիրում ես ուսուցչին առանց նրան նույնիսկ ճանաչելու: Նայում ես նրան, նա քեզ չի էլ դասավանդել երբեք, բայց ասում ես՝ թող իմ դասղեկը լինի... Ուրեմն, ինչպե՞ս անենք, որ դու չսխալվես: Իմ կարծիքով, ճիշտ կլինի,





եթե դասղեկ նշանակելուց մի քանի ամիս հետո դուք գնահատեք: Լավ է աշխատել՝ թող շարունակի դասղեկություն անել, չի հիշել ձեզ՝ ուրեմն, բարի ճանապարհ: Չեմ ուզում թաքցնել, կան դասղեկներ, որոնք միայն աշխատավարձ են ստանում դասղեկության համար: Մեզ համար սա դաժան խոստովանություն է, որովհետև մենք մինչև այսօր աշխատում էինք չասել ձեզ մեր թերությունների, մեր սխալների մասին, իսկ այսօր արդեն դուք եք խոսակցության հրավիրում մեզ: Ընտրեք ձեր դասղեկին, բայց ընտրեք արժանավորին, եղեք անաչառ:

ԲԵԱՏՐԻՉԵ ՍՏԵՓԱՆՅԱՆ (Երևան, № 129 դպրոց, ուսուցիչների համամիութենական համագումարի պատգամավոր)— Դուք հասկանո՞ւմ եք՝ ինչ կարևոր ու դժվար բան եք պահանջում: Իսկ եթե պարզապես ձեր ուզածը թույլ դասղեկ ունենալն է... Չէ՞ որ հենց ինքներդ, հաճախ ավելի հանգիստ լինելու համար, ուրախանում եք, երբ դասղեկի ժամ չի լինում, երբ դասղեկը չի հետաքրքրվում բացակայություններով: Նախ ինքներդ պետք է լրջանաք ու մեծանաք, դաստիարակեք ինքներդ ձեզ:

**«Իսկ ամենից վատն այն է, որ քեզ չեն հավատում: Մեծին, եթե նա ազնիվ է, միշտ հավատում են, իսկ երեխան միշտ կասկածանքի տակ է:**

**ՅԱ. ԿՈՐՉԱԿ»:**

Դպրոցում չկան գլխավոր ու երկրորդական ուսուցիչներ: Այստեղ բոլորը գլխավոր են: Բայց կա մեկը, որը պարտավոր է մյուսներից գոնե մի քիչ ավելի ուշադիր, ավելի հոգատար, ավելի սրտացավ լինել: Այդ մեկը դասղեկն է: «Ես նախանձում եմ դասղեկներին, նրանք միշտ երեխաների հետ են...»,— գրել է Վ. Սուխոմլինսկին: Իսկ իրենք՝ դասղեկները, ուրա՞խ են դրա համար: Բոլորի՞ համար է դասարան մտնելն իրադարձություն: Անկախ նրանից, թե քանի տարի են աշխատել դպրոցում՝ կե՞ս, թե՞ երեսուն: Անկախ նրանից, թե օրական քանի այդպիսի դասարան են մտնում: Եվ ամենակարևորը՝ ուրա՞խ են արդյոք այդ հանդիպումների համար երեխաները: Հերթական հարկադիր ու տհաճ միջոցառո՞ւմ է դա նրանց համար, թե՞ երջանիկ հնարավորություն՝ ևս մեկ անգամ շփվելու բարի ու իմաստուն մարդու հետ, որը հեղինակություն է, իսկ գուցև՝ իդեալ: Ավաղ... Եվ հիանալի է, որ երեխաները կարող են ընտրել իրենց դասղեկին: Նրանք պարտավոր են չմոռանալ, թե ինչպիսի մեծ պատասխանատվություն է դնում իրենց վրա այդ իրավունքը: Որպեսզի չսխալվեն: Որպեսզի չխառնեն ձևն ու բովանդակությունը: Որպեսզի մանկական անհոգությամբ ու դաժանությամբ չխոցեն նրան, ում համար «դու մեզ պետք չես, ուսուցիչ» բառերը մահվան դատավճռի ուժ ունեն:

ԼԻԼԻԹ ԿՈՍՏԻԿՅԱՆ (Երևան, № 40 դպրոց, 9-րդ դասարան)— Ինձ շատ է դուր եկել այն առաջարկը, որ մենք կարող ենք մասնակցել մանկավարժական խորհուրդներին: Իսկապես, եթե մեր մասին եք մտածում, ուրեմն մեզ էլ հարցրեք: Մենք էլ առաջարկենք:

ՎԱՀԵ ԲԱՐՍԵՂՅԱՆ (Երևան, Գորկու անվան դպրոց, 7-րդ դասարան)— Միևնույն է, երեխաներին չեն լսելու: Ասենք, թե մասնակցեցինք մանկավարժական խորհրդին: Ուսուցիչները քվեարկում են հօգուտ մի բանի, որը մենք սխալ ենք համարում: Մանկխորհրդում մենք փոքրամասնություն ենք և հետո՝ չպատժվելու համար կլռենք:

ԼԻԼԻԿ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ (Երևան, №133 դպրոց, ուսուցիչների համամիութենական համագումարի պատգամավոր)—Ես էլ եմ համամիտ ձեզ հետ, երեխաներ: Սա կեղծ դեմոկրատիա է: Մենք զրույցի պիտի նստենք հավասարի իրավունքներով: Դուք չպետք է կաշկանդվեք, մենք չպետք է կասկածենք:

ԷԼՎԻՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ (Երևան, № 114 դպրոցի ուսուցչուհի)— Իսկ ինձ թվում է, որ կարելի է հրավիրել ձեզ այն խորհրդակցություններին, որտեղ քննարկվում է ձեր հարցը, որտեղ կոնկրետ գործ ենք անում: Թե չէ՝ գիտե՞ք ինչ կստացվի: Մանկավարժական խորհուրդների ժամանակ մենք և իրար ենք քննադատում, և այնպիսի հարցեր ենք լուծում, որոնք անձնական բնույթ են կրում: Գուցե մի քի՞չ էլ մտածենք, գուցե ուրի՞շ եղանակով հարցը լուծենք:

ՍԻԼՎԱ ԱԶՈՅԱՆ— Ես բողոք ունեմ երեխաների դեմ: Դուք մոռացել եք ինքնուրույնության, ինքնավարության մասին: Եվ լավ է, որ հիմա սկսել եք տեղից շարժվել: Համաձայն եմ, մենք շատ ենք մեղավոր: Մեզ համար ավելի հեշտ է եղել պատրաստի զեկուցումը ձեր ձեռքը խցկել, քան մտածել, թե ինչպես ձեր մեջ ինքնուրույնություն արթնացնել: Եվ հի-

մա մենք կանգնել ենք կոտրած տաշտակի առաջ: Խնդրում ենք տեղից շարժվել, իսկ ձեզ այս վիճակն արդեն դուր է գալիս: Քանի՞ անգամ եմ խոսել ձեզ հետ, թե ամեն ինչ կկազմակերպենք, միայն թե ձեզ հուզող հանդիպում նախաձեռնենք, իսկ դուք մի պահ միայն ոգևորվել եք ու վերջ:

Հիմա ինքնավարություն եք պահանջում: Կկարողանա՞ք: Ուզում եմ հավատալ, որ կկարողանաք:

ԼԵՎՈՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ (Երևան, Չերժինսկու անվան դպրոց, 8-րդ դասարան)— Եթե մենք ուզում ենք իրար սիրել ու հասկանալ, պիտի սկսենք գնահատականներից: Ինչքան ենք վիրավորվում, երբ հանկարծ պատժելու համար դուք մեզ «2» եք նշանակում: Ինչքան ենք զարմանում, երբ «3» եք նշանակում այն աշակերտին, որը հազարից մեկ է դպրոց գալիս: Եվ առհասարակ մեր ամեն քայլն ասես գնահատվում է:

ԱՐՏԱԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ (Երևան, № 161 դպրոց, 10-րդ դասարան)— Իսկ եթե գնահատման համակարգը փոխե՞նք: Ճիշտ չէ՞ր լինի, եթե 10 բալային համակարգ ստեղծվեր:

ԲԵԱՏՐԻՉԵ ՍՏԵՓԱՆՅԱՆ— Դուք դպրոցից տուն եք վերադառնում: Մայրիկը ձեզ հարցնում է. «Այսօր ի՞նչ ըստացար»: Իսկ մտածե՞լ ես, որ ոչ մեկը չի ասում. «Այսօր ի՞նչ սովորեցիր»: Տեսնում եք, բոլորի համար կարևոր է դարձել գնահատականը և ոչ թե գիտելիքը: Եվ ինչքան էլ փոխենք գնահատելու ձևը, միևնույն է, գնահատվողները միշտ էլ պիտի դժգոհեն, իսկ գիտելի՞քը… Ուրեմն մենք պիտի ձգտենք, որ առհասարակ վերանա աշխատանքը գնահատելու այս եղանակը: Բայց այսօր դժվար թե դա հնարավոր լինի անել, որովհետև եղած մեթոդները մեզ, անկախ մեր ցանկությունից, դրան են մղում: Եվ եթե հիմա ձեր ուսուցիչները, ծնողները, բոլոր մեծերն անընդհատ խոսում են, դըժգոհում են, իրավացի են: Դպրոցին այսօր հեղափոխական վերակառուցում է պետք:

ԷԼՎԻՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ— Ինքս երբեք չեմ գնահատում: Դասը պատասխանողին գնահատում են աշակերտները: Նրանք ավելի անաչառ են ու գիտեն, թե ով ինչի է արժանի: Մի բանում հաստատ համոզված եմ. դուք սիրում եք գնահատվել: Սիրում եք գնահատականի համար սովորել: Մենք էլ մեղավոր ենք, որովհետև փոխանակ ձեր մեջ սովորելու նկատմամբ սեր արթնացնելու, հանգիստ նստել ենք երկար տարիներ:

ԱՆԱՀԻՏ ԱՎԵՏԻՍՅԱՆ (Կրուպսկայայի անվան դպրոց, 6-րդ դասարան)— Մենք ստիպված ենք գնահատականի համար սովորել: Հնարավո՞ր է, արդյոք, այդքան առարկա անցնել ու միայն մըտածել սիրով սովորելու մասին: Մի օր, երկու օր, երեք օր: Հետո հոգնում ենք, ձանձրանում ու չենք հասկանում, թե մեր ինչին է պետք այս մասին իմանալը, այս բանաձևը հիշելը, ինչո՞ւ ենք կանոններ անգիր անում:

ՍԻԼՎԱ ԱԶՈՅԱՆ— Այսօր բոլորս պայքարում ենք, հարկավոր է ծրագրերը բեռնաթափել: Ես հասկանում եմ ձեզ, երբ հայ գրականությունից ստիպված անցնում ենք մի հեղինակ, որի գործերն արդեն ձեզ չեն հետաքրքրում: Ձանձրանում եք, բողոքում: Մենք էլ արդարանում ենք՝ ծրագրով այսպես է: Եվ ուսուցիչը մեղավոր չէ: Եվ ուսուցիչն էլ գտնում է, որ չեք կարող տասը տարում ամեն ինչ իմանալ: Իմ կարծիքով՝ կարիք էլ չկա հազար ու մի տեղեկություններով ծանրաբեռնել հիշողությունը:

Կարծում եմ, կհամաձայնեք. կարևորն ուսման նկատմամբ սեր արթնացնելն է, ինքնուրույն մտածել սովորեցնելը: Մենք ձգտում ենք դրան:

ԱՆԺԵԼԱ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ (Երևան, № 22 գիշերօթիկ դպրոց, 9-րդ դասարան)— Կարդացեք մեր դասագրքերը, նայեք նկարազարդումները և անկեղծորեն ասեք. հնարավո՞ր է այդ գրքերի միջոցով ուսումը սիրել:

**«Ինչո՞ւ երեխաների համար ամեն ինչ վատ է արվում: Լավ նկարիչը մեծերի համար է, իսկ ամենաանպետքը՝ երեխաների: Երեխաների համար գիրք է գրում ամեն ոք, ով չի ծուլանում, և ոտանավորներ, և երգեր: Ում որ մեծերը լսել չեն ուզում, գնում է երեխաների մոտ:**

**Իսկ մենք բոլորից շատ ենք սիրում լավ հեքիաթներ, նկարներ և երգեր»:**

**ՅԱ. ԿՈՐՉԱԿ**»:

ԼԻԼԻԿ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ— Դասագրքեր կազմելու համար պետք է մրցույթ հայտարարել: Դասագրքեր պետք է կազմեն նորարար ուսուցիչները: Նրանք, ովքեր գտել են այն դասավանդման մեթոդը, որն ավելի ճիշտ է, ավելի արդյունավետ:

Դասագրքերը հնացել են ու վատ են կազմված: Ճիշտ է: Դասագրքերը պետք է փոխել և որքան շուտ, այնքան լավ: Ճիշտ է նաև այն, որ ամենալավ, նույնիսկ հանճարեղ դասագիրքը դեռ քիչ է: Թեկուզ հենց այն պատճառով, որ նաև բացելու ցանկություն պետք է լինի: Եվ այստեղ, իհարկե, թեև մեծ է ուսուցչի դերը, բայց նա մեղավոր չէ:

Նա հաճախ ինքն էլ ուզում է ձեզ պատմել հետաքրքիր ու օգտակար պատմություններ, սակայն նախապես, վերևից ուղարկված ծրագիրը թույլ չի տալիս: Պետք է հասցնել ամեն ինչ, պետք է հասցնել ժամանակին և... արդյունքում ստացվում է, որ ձեզ ոչ հետաքրքրում և ոչ էլ պետք են գալիս այդ տեղեկությունները ամեն ինչի մասին:

ՍՈՆԱ ՏԱՆԱՆՅԱՆ (Երևան, Զերժինսկու անվան դպրոց, 8-րդ դասարան)— Ամենահասարակ հարցերը, ամենակարևոր պրոբլեմները առհասարակ առանց մեզ են լուծվում: Պիտի գնանք ուսումնաարտադրական կոմբինատ: Բայց արի տես, որ այս հարցն էլ ուսուցիչն է լուծում: Ամեն մեկին ասում է, թե ով ինչ է սովորելու: Դրա համար էլ չենք ուզում սովորել:

ԾՈՎԻՆԱՐ ԱՄԻՐՅԱՆ— Կամ էլ, երբ հանրօգուտ աշխատանքի ժամերն են գալիս, սկսում ենք մաքրել դպրոցի միջանցքները, բակը... Իսկ չի՞ լինի մեզ լուրջ գործ հանձնարարեք...

ԼԻԼԻԿ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ— Ես շատ անգամ եմ համոզվել, որ դուք սիրում եք գործ անել՝ որևէ բան սարքել, վերանորոգել: Իսկ մենք ձեզ հաճախ պարտադրում ենք, անհաբեկում, երբեմն էլ այնպիսի անիմաստ աշխատանքներ ենք հանձնարարում, որ դուք այլևս առհասարակ չեք ուզում աշխատել:

Այսօր արդեն դուք հնարավորություն ունեք դասերից հետո աշխատելու: Այդ մասին հատուկ կանոնադրություն է մշակվել:

ԲԵԱՏՐԻՉԵ ՍՏԵՓԱՆՅԱՆ— Այո, սա արդեն հետաքրքիր ու կարևոր դաս է: Եվ ես կողմ եմ, որ դուք վարձատրվեք ձեր արած աշխատանքի համար: Կողմ եմ, որ դուք նախ և առաջ իմանաք և կարողանաք օգտագործել դրամը: Այս հարցն էլ քննարկեք ձեր ջոկատներում. որոշեք միասին, ի՞նչ աշխատանք կարող եք անել: Ժամանակն է լրջանալու, մեծանալու: Չկա ավելի լավ ուսուցիչ, քան աշխատանքը:

**«Լավ հեքիաթը, հետաքրքիր պատմությունը մենք կարող ենք շատ անգամ լսել: Մեծերն էլ շատ անգամ են գնում միևնույն ներկայացումը դիտելու, իսկ չէ՞ որ նրանք ավելի շատ են ամեն ինչից ձանձրանում: Երեխաները ուզում են լավ գիտենալ այն, ինչը որ հետաքրքրում է իրենց, բայց դպրոցում ուսուցիչը միշտ շտապում է, նա միշտ ժամանակ չունի»:**

**ՅԱ. ԿՈՐՉԱԿ:**

ԷԼՎԻՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ— Դուք դժգոհ եք ձեր կաբինետներից: Կահավորված չեն: Ճիշտ է: Մեր դպրոցների նյութատեխնիկական բազան աղքատիկ է: Եվ այստեղ արդեն ուսուցիչները, իրոք, մեղավոր չեն: Հիմա էլ ձեռնարկությունները անցել են տնտհաշվարկի, և այդ պատճառով նվազել է բազային ձեռնարկություններից ստացվող օգնությունը: Մինչ կլուծվի այս հարցը, գուցե տարի անցնի: Բայց հո չե՞նք կարող սպասել, թե ինչ են որոշելու: Եկեք իսկապես աշխատենք ու ստացած գումարով կահավորենք դպրոցը:

Մենք կարող ենք շարունակել ձեզ հուզող պրոբլեմների շարքը. դասացուցակները կազմելիս, բացի աշակերտի հնարավորություններից, ամեն ինչ հաշվի են առնում, չեն մտածում ձեր դասամիջոցները ճիշտ կազմակերպելու մասին:

Վերջերս մեր երկրում էր գտնվում Աստրիդ Լինդգրենը: Լրագրողներից մեկի հարցին, թե ինչն է ամենակարևորը մեծերի ու փոքրերի փոխհարաբերություններում, մեծ հեքիաթասացն առանց տատանվելու պատասխանեց՝ հարգանքը: Հնարավոր չէր ավելի կարճ ու ավելի ճշգրիտ պատասխանել, թե ինչ է պետք մեր ուսուցիչներին և աշակերտներին: Սա է այսօրվա և ապագայի դպրոցի հիմնաքարը:

Մեր կյանքում տեղի ունեցող հեղափոխական վերակառուցումները առաջին հերթին դպրոց պետք է գան: Եվ ամենատաղանդավոր, ամենահրաշալի մտքերը, գաղափարները ու գործերը դպրոցին պիտի նվիրենք:

«Եթե ես ուսուցիչ լինեի...»: Աշխատիր չմոռանալ, թե ինչ և ինչպես կանեիր, եթե ուսուցիչ լինեիր: Անպայման վերադարձիր և արա այնպես, որպեսզի քո դպրոցը դառնա ուրախության դպրոց:

Զրույցը վարեց
ՌՈՒԶԱՆ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԸ





ԳԵՎՈՐԳ ԱԲԳԱՐՅԱՆ

# «ՄԽԻԹԱՐ Ի ՋԵՐՄԱՆՑ»

Պատկերացնելու համար, թե որքան բարձր է Մխիթար Հերացու բժշկագիտական հեղինակությունը համաշխարհային գիտության ասպարեզում, հիշենք գերմանացի գիտնական Էռնստ Զայդելի գնահատականը. «Երբ մենք, առանց կանխակալ կարծիքի, համեմատում ենք Սուրբ Հիլդեգարդի գրածը հայ վարպետի վաստակի հետ, տեսնում ենք, որ վճռականապես հայ վարպետին պետք է հանձնենք առաջնության դափնեպսակը»: Էռնստ Զայդելը մեծ դժվարությամբ հայերեն սովորեց և գերմաներեն թարգմանեց հայ բժշկապետի աշխատությունը: Նրա թարգմանությունը տպագրվեց 1908 թ. Լայպցիգում և արժանացավ Ֆուշմանի անվան բարձր մրցանակին: Թարգմանչի հիշատակած «Սուրբ Հիլդեգարդը» նշանավոր Հիլդեգարդ Ֆոն Բինգենն է, որը ոչ միայն գիտնական էր, այլև Գերմանիայի սահմաններից դուրս հռչակված այնպիսի մի մեծ գործիչ, որն իսկապես դասվել է սրբերի շարքը: Մինչև օրս էլ ամեն տարի նշվում է նրա հիշատակը: Ահա այսպիսի նշանավոր մի գիտնականի և գործչի հետ է գերմանացի գիտնականը համեմատել Մխիթար Հերացուն և առաջնությունը տվել հայ գիտնականին, որի անունն այսօր կարելի է գտնել սովետական և արտասահմանյան բժշկագիտական հանրագիտարաններում և տարբեր լեզուներով հրատարակված ուսումնասիրություններում: Չորս տարի առաջ՝ 1984-ին, լրացավ Հերացու «Ջերմանց Մխիթարութիւն» կոչվող գրքի 800-ամյակը: Ութ դար առաջ գրված գիրքն այսօր գոյություն ունի նաև ռուսերեն՝ կրկնակի թարգմանու-

թյամբ: Երևանի բժշկական ինստիտուտում, բժշկագիտության պատմության ծրագրի մեջ, ի շարս աշխարհի մյուս նշանավոր բժիշկների երկերի, ուսումնասիրվում է նաև Մխիթար Հերացու վաստակը:

«ԵՍ, ՄԽԻԹԱՐ ՀԵՐԱՑԻ, ՏՐՈՒՊՍ Ի ԲԺՇԿԱՑ»: Այս բառերով է սկսվում Մխիթար Հերացու «Ջերմանց Մխիթարութիւն» գիրքը: Ի՞նչ է նշանակում «տրուպս ի բժշկաց», այսինքն՝ «բժիշկներից ամենաչնչինը, ամենափոքրը»: Օտարները նրան դասել են ամենանշանավոր մարդկանց շարքը, իսկ ինքն իրեն համարել է բժիշկներից ամենաչնչինը: «Ի մանկութենէ սիրող եղէ իմաստութեան և բժշկական արուեստիս»: Առանց թարգմանելու էլ հասկանալի է, որ նա ծնվել էր բժիշկ դառնալու համար, ի ծնե սիրել է իր ապագա մասնագիտությունը և ոչ թե պատահաբար է ընկել բժշկության ասպարեզ: Լավ բժիշկ դառնալու համար անհրաժեշտ էր ուսումնասիրել նաև ուրիշ ժողովուրդների բժշկության նվաճումները: Իսկ ուսումնասիրելու համար հարկավոր էր իմանալ տարբեր լեզուներ: Մխիթար Հերացին տիրապետում էր նաև հունարենին, արաբերենին, պարսկերենին և իր գրքում օգտագործել է ժամանակի ամենանշանավոր գիտնականների փորձը:

Ու թեև Մխիթար Հերացու ժամանակ Արևելքի գրեթե բոլոր նշանավոր բժիշկները գրում էին արաբերեն (որ Արևելքի բժշկական ընդհանուր լեզուն էր, ինչպես Արևմուտքում՝ լատիներենը), և Հերացին նույնպես կարող էր գրել միջազգային լեզվով, փայլել օտարների առջև, բայց սերը մայրենիի նկատմամբ նրան ստիպել է իր գիրքը շարադրել հայերեն:

«ԵՒ ԱՐԱՐԻ ՋՍԱ ԳԵՂՋՈՒԿ ԵՒ ԱՐՁԱԿ ԲԱՐԲԱՌՈՎ, ՋԻ ԴԻՒՐԱՀԱՄ ԼԻՆԻ ԱՄԵՆԱՅՆ ԸՆԹԵՐՑՈՂԱՑ»: Այսինքն՝ «Գրեցի ժողովրդական լեզվով, որպեսզի հեշտ հասկանալի լինի բոլոր ընթերցողներին»: Նրա օրոք ժողովրդի լեզվով գրելը կարող էր նույնիսկ դիտվել որպես պակաս գրագետ լինելու նշան, որովհետև սովորաբար գրում էին գրաբար լեզվով: Բայց ժողովրդի առողջության մասին մտածող բժիշկը գիտեր, որ գրաբարը բոլորին հասկանալի չէ, այդ իսկ պատճառով գերադասեց գրել «գեղջուկ և արձակ բարբառով»: Գրքի առաջաբանը նա շարադրել է գրաբար, կարծես թե ցույց տալու համար, որ հրաշալի տիրապետում է նաև գրքի լեզվին:

«ՈՐ ԱՆՈՒՇԱՑՆԵՍ ՋՍԻՐՏՆ»: Բժիշկը պետք է հիվանդին օգնի ոչ միայն դեղանյութերով, այլև հոգատարությամբ, իմանա հիվանդի տրամադրությունը, մտերմաբար զրուցի նրա հետ, ամեն ջանք գործադրի՝ հիվանդի սիրտն ուրախացնելու համար. «Զքո զամենայն ջանքն վասն սրտին արա, որ անուշացնես զսիրտն և խաղաղեցնես զտրտմութիւնն: Խօսիւք և կատակով և այլ ամենայն դիմօք զբաղեցրու»: Կարդում ենք այս տողերը և հիշում հին հնդկական դասական բժշկության ձեռնարկները («Չարակա» և «Սուսրուտա»), որոնց համաձայն նույնպես մարդկանց բուժմանը նվիրված մասնագետները պետք է լինեն հոգով և մարմնով մաքուր, գեղեցիկ, պատվավոր և դեմքով հաճելի մտավորականներ: Հիշում ենք նաև մեր ժամանակի նշանավոր հոգեբաններ Բրունո Բետտելհայմի և Դանիել Կարլինի «Սերը որպես թերապիա» գիրքը:

«ԿՈՎՆ ԿԱՐՄԻՐ ՊԻՏԻ»: Մխիթար Հերացին ծնվել է Հեր քաղաքում (այժմ կոչվում է Խոյ), բայց բժշկություն է արել Կիլիկիայի հայկական թագավորության սահմաններում: Նրա մտերիմ բարեկամներից է եղել նաև մեծ բանաստեղծ Ներսես Շնորհալին, որը գրել է իր բարեկամի անունը կրող բանաստեղծություններ: «Ջերմանց Մխիթարութիւն» գիրքը գրվել է Հերացու մեկ այլ բարեկամի՝ Գրիգոր Տղայի պատվերով, որը նույնպես, Շնորհալու նման, և՛ բանաստեղծ էր, և՛ կաթողիկոս: Ինչպես Կիլիկիայում, այնպես էլ բուն Հայաստանում, հատկապես ճահճուտ վայրերում տարածված էին ջերմություն առաջացնող զանազան հիվանդություններ, որոնց բուժման մտահոգությամբ է գրել իր աշխատությունը հայ բժշկապետը:

«Ջերմանց Մխիթարության» մեջ նշված որոշ դեղամիջոցներ և դեղաբույսերի օգտագործման եղանակներ այսօր էլ չեն կորցրել իրենց ուժը: Բժշկելու մեծ փորձի տեր վարպետը զարմանալի սուր դիտողականությամբ նկարագրում է այնպիսի հիվանդագին երևույթներ, որոնց հարուցիչները հայտնի դարձան միայն մանրադիտակի գյուտից հետո: Նրան հայտնի էր, օրինակ, որ հիվանդ կենդանիները կարող են վարակել մարդկանց:

Առաջարկում է օգտագործել առողջ կենդանիների կաթ: Երբեմն կարևորություն է տալիս նույնիսկ կաթնատու կենդանու գույնին: «Գիտցիր, որ էշն ճերմակ լինի և առողջ»: «Այ կովն կարմիր պիտի»: Վիտամինների հայտնագործություններից հարյուրամյակներ առաջ նա իմացել է, որ սննդամթերքները հնանալիս կորցնում են իրենց ներգործության ուժը: Առաջարկում է կենդանիներին կերակրել դալար խոտով և հետո միայն օգտագործել նրանց միսն ու կաթը:

Առանձնահատուկ ուշադրություն է նըվիրում մաշկի հիգիենային, դիետային, ջրային բուժմանը և այլն: Եվրոպական բժշկագիտությանը միայն 17-րդ դարում հայտնի դարձավ, որ որոշ հիվանդություններ կարող են առաջանալ ոչ թե ինչ-որ ախտածին մանրէներից, այլ ուղղակի մարդու աշխատանքի բնույթից, մասնագիտությունից, «եվ որի արհեստը դարբնությունն է և կամ ապակեգործությունը կամ մեկ այլ արհեստ, որ կրակի հետ է կապված...»: Այս տողերը մերօրյա գիտության համար ունեն ոչ միայն բժշկագիտական, այլև առհասարակ պատմագիտական նշանակություն: Նըրանք մեզ են հասցրել միջնադարում զարգացած հայկական արհեստներին (դարբնություն, ապակեգործություն և այլն) վերաբերող կարևոր տեղեկություններ:

**«Ի ՅԵՐԿՐՈՐԴ ԳԻՐՔՆ ՅԻՇԵՑԱՆՔ»:** Հերացին բուժելուց բացի զբաղվել է նաև բժշկություն սովորեցնելով: Շարադրել է աշխատություններ՝ նվիրված բժշկության զանազան բնագավառների (մարդակազմություն, կենսաբանություն, ախտաբանություն և այլն): Դժբախտաբար նրա այդ երկերը ժամանակի ընթացքում ոչնչացել են: Հին ձեռագրերում գտնում ենք Հերացուն վերագրվող նաև այնպիսի աշխատություններ, որոնք վերաբերում են քարերի բուժիչ հատկություններին:

Մխիթար Հերացին գրել է նաև աչքի կազմությանը վերաբերող մի աշխատություն, որից միայն պատառիկներ են պահպանվել: Հետագա բժիշկներն այդ աշխատությունն ունեցել են ձեռքի տակ և նրանից մեջբերումներ են կատարել: Քաղվածքներից երևում է, որ հայ վարպետը Եվրոպայի գիտնականներից շուրջ կես հազարամյակ առաջ ունեցել է որոշ, թեկուզ և աղոտ, պատկերացում տեսողության գոյացման մասին: Նրան հայտնի է եղել, որ լույսի ճառագայթները բեկվում են աչքի մեջ, որից հետո առարկաները երևում են շրջված տեսքով: Այս ամենը Հերացուն դարձնում է իր ժամանակի ամենաառաջավոր բժիշկներից մեկը:

**ԻՆՉՊԵՍ ԳՏՆՎԵՑ ՁԵՌԱԳԻՐԸ:** Շուրջ 250 տարի առաջ ֆրանսիական մինիստր Մորըպան մասնագետներ ուղարկեց Արևելք՝ Փարիզի Արքայական մատենադարանի համար հին ձեռագրեր հայթայթելու առաջադրանքով: Այդ ժամանակ գիտությանը դեռ հայտնի չէին քարերի և կավի վրա փորագրված եգիպտական գաղափարագրերի և սեպագիր արձանագրությունների գաղտնիքները: Քարերը քարի պես լռում էին և չէին կամենում ոչինչ հաղորդել հին աշխարհի մասին: Իսկ գիտնականները կամենում էին անպայման թափանցել դարերի խորքը, իմանալ անցյալը: Մագաղաթյա ձեռագրերը շատ բան ունեին ասելու: Եվ ահա, 1728 թ. օգոստոսի 28-ին Ֆրանսիայի նախարարը Կոնստանդնուպոլսի իր աշխատակիցներից նամակ է ստանում այն մասին, որ մի հայի մոտ հայտնաբերվել է 160 հին ձեռագիր: Սա մի շլացուցիչ գյուտ էր, որովհետև այն օրերին անձնական գրադարանում այդքան շատ ձեռագիր ունենալը նշանակում էր տեր լինել հարուստ մատենադարանի: Հետագայում գտնվեցին նաև այլ ձեռագրեր և տեղափոխվեցին Փարիզ, որտեղ մինչև օրս էլ պահվում ու հարստացնում են Ֆրանսիայի Ազգային գրադարանի ունեցվածքը: Ահա, այդ ձեռագրերի մեջ էր գտնվում նաև Մխիթար Հերացու «Ջերմանց Մխիթարութիւն» գիրքը:

Ձեռագրի հայտնաբերումից հետո անցել է արդեն երկու և կես դար, հայ մեծ բժշկապետի երկը վաղուց տպագրվել է հայերեն (1832 թ. Վենետիկ), թարգմանվել է տարբեր լեզուներով և աշխարհով մեկ տարածել է իր հեղինակի անունը: Հայտնաբերվել են փարիզյան ձեռագրից շատ ավելի հին մասյաններ, որոնցում սերունդները արտագրել և ապագային են հասցրել միջնադարյան հայ գիտությունը պատիվ բերող ազգային բժշկագիտական հուշարձաններ: Մասյաններից հնագույնն այժմ պահվում է Մեսրոպ Մաշտոցի անունը կրող Մատենադարանում:



# Կոստան Զարյան

1885—1969

## Տատրագոմի հարսը

(հատվածներ պոեմից)

Թոնիրների շուրջ թափոր է նստել:
Պառկած տավարի կողերի վրայից երազ է սահում:
Գոմը տաքուկ է, և եկեղեցու գմբեթի վրա
Թառել է կանաչ բոցավետ մի լույս:
Պառավ մամերի շուրթերից ընկած խոսքերը գաղտնի
Քայլում են աշխույժ և հոգիների կիսաբաց դռան
Ուժգին զարնվում են ոսկե մուրճերով:
Հայ երազների խորունկ իմաստը
Նստել է լուսե մեծանիվ մի կառք
և ճռճռալով
պտույտ է գալիս ոսկե մարգերում
Ճոր աշխարհների:
Ոմանք նետել են իրենց ուսերին
Սասնա լեռների փեշերը երկայն,
դրել են իրենց տենդոտ ճակատին
Սիփանա թագը պսպղուն ու վառ
և մեջքին կապել ադամանդազարդ սուրը Եփրատի:



Ո՞վ չի անցել Քսենոֆոնի հետ Հայոց երկրով.
Ծամփաների աղեղը ճայթել է.
նետը խրվել է լեռան գագաթին՝
դողում է:
Սառը
արել է սուրը.
և անդունդի եզրի մկանունքները
պողպատե ճիպոտներով զարնում են հսկա լռությունը
Սասնա և ուրիշ վայրերի,
որոնց անունը սոսկում եմ հիշել:
Ով չգիտե, որ Հայոց երկրում
լեռները մահ են գալիս խմբով:

# ԱՆԻ ՔԱՂԱՔԻ

## գրչության կենտրոններն ու մատենադարանները



Անիական մանրանկարչության նմուշ Ավետարանից (1211 թ.), խորան, նկարիչ Մարգարե. Մատենադարան, ձեռագիր № 6288:



Անիական գրակալ

Անի քաղաքը միջնադարյան Հայաստանի ոչ միայն քաղաքական ու տնտեսական, այլև խոշորագույն մշակութային կենտրոններից մեկն էր: Ուսումնակրթական և մշակութային տարաբնույթ հաստատությունների հետ մեկտեղ քաղաքն ուներ գրչության կենտրոններ, ուր ստեղծվում էին բազմաթիվ ձեռագիր մատյաններ: Անիի եկեղեցիներից շատերը, ինչպես և Բագրատունիների արքունիքը, ունեին ձեռագրերի հավաքածուներ՝ մատենադարաններ, որոնք մըշտապես հարստանում էին նոր ընդօրինակությունների ու նվիրատվությունների շնորհիվ:

Քաղաքի ամենանշանավոր մշակութային կենտրոններից էր Մայր տաճարը՝ Անիի կաթողիկեն, որին կից գործում էր բարձր տիպի հոգևոր դպրոց: Այստեղ էին կենտրոնացված նաև մեծ թվով ձեռագիր մատյաններ:

Անիի Մայր տաճարը քաղաքի կարևոր գրչության կենտրոններից էր: Այստեղ ձեռագրեր է ընդօրինակել հայտնի մշակութային գործիչ և գիտնական Հովհաննես Իմաստասերը, տարբեր տարիներին, Կաթողիկեում են ապաստավորել Սամվել Անեցի ժամանակագիրն ու Միխիթար Անեցի պատմիչը: Տաճարի մատենադարանում պահվել են հազվագյուտ ձեռա-

գրեր, որոնցից հատկապես պետք է նըշել 7-րդ դարի հայ հանճարեղ գիտնական Անանիա Շիրակացու «Քննիկոն» ծավալուն աշխատությունը։

Անիի Մայր տաճարում գրչությամբ է զբաղվել Թադևոս անունով մեկը, որը ժամանակակիցների կողմից հորջորջվել է որպես «անպարտելի գրիչ»։ Այստեղ է աշխատել նաև Գևորգ գրիչն ու կազմարարը, որի 1046 թվականին ընդօրինակած ձեռագիրը այժմ պահվում է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում։

Մայր տաճարի ձեռագրերի հավաքածուն մշտապես լրացվել է նվիրատվությունների շնորհիվ։ Դրանցից մի քանիսը հիշատակվում են Կոթողիկեի վիմագիր արձանագրություններում և ձեռագրերի հիշատակարաններում։

Ձեռագիր գրքեր էին պահվում նաև Բագրատունի թագավորների արքունիքում, որը գտնվում էր Անիի միջնաբերդի ընդարձակ պալատում։ Այդ ձեռագրերը սովորաբար ամենաընտիր ու կատարյալ օրինակներն էին՝ ճոխ ու գունավառ գեղարվեստական հարդարանքով և բարձրարվեստ գրչությամբ։

Հայտնի է նաև, որ Բագրատունի թագավորներից ոմանք շատ էին ուսումնասեր ու գրասեր։ Նրանց պատվերներով մի շարք թարգմանություններ են կատարվել հատկապես բժշկագիտության բնագավառում։

12—13-րդ դդ. Անիում հայտնի էր Բեխենց վանքի գրչության կենտրոնը, որը գործում էր անեցի նշանավոր մեծատուն Տիգրան Հոնենցի հովանավորության ներքո։ Այստեղ 1211 թվականին Մարգարե նկարիչը պատկերազարդել է հետագայում «Հաղբատի Ավետարան» անունն ըստացած մեծարժեք մատյանը։

«Հաղբատի Ավետարանի» մանրանկարները մեծապես կրում են քաղաքային միջավայրի, Անիի կյանքի ու կենցաղի դրոշմը։ Մանրանկարիչն այստեղ երբեմն շրջանցելով պաշտոնական պատկերագրության կանոնները, ձառագիր է ներմուծել քաղաքային առօրյա կյանքը հիշեցնող ուշագրավ դրվագներ, գեղեցիկ ձևակերպումներով և իրապատում։

Ձեռագրեր են ընդօրինակվել նաև Անի քաղաքի Ներքին բերդում։ 1298 թըվականին Եղբայրիկ անունով գրիչը այստեղ գրել է մի ձեռագիր՝ Անեցի Հակոբի պատվերով։ Մանրանկարները ըստեղծել է Խաչատուր նկարիչը։ Այդ ուշագրավ ձեռագիրն այժմ պահվում է Լենինգրադի Արևելագիտության ինստիտուտում։

Անին հայտնի էր իր մեծաթիվ եկեղեցիներով ու տաճարներով, որի համար ժամանակակիցները այն հազար ու մեկ եկեղեցիների քաղաք են կոչել։ Ըստ պահպանված վիմագիր արձանագրությունների՝ այդ եկեղեցիներից շատերը ձեռագիր գրքերի հավաքածուներ ունեին։ 1036 թվականին Ապլղարիբ Պահլավունին իր կառուցած Ս. Փրկիչ եկեղեցու շինարարական արձանագրության մեջ նշում է, որ մի շարք ձեռագրեր է նվիրում եկեղեցուն, իսկ մեկ այլ արձանագրության մեջ սպառնում և նզովք է նախատեսում նրանց համար, ովքեր կըփորձեն հափշտակել դրանք։

Անիի Ծուղան Պահլավունու եկեղեցու 1037 թվականին գրված արձանագրության մեջ ևս հիշատակվում է, որ այնտեղ ձեռագրեր են պահվել։ Գրադարան ուներ նաև Առաքելոց եկեղեցին։ Անի քաղաքի գրչության կենտրոնների ու գըրադարանների թվարկումը այսքանով չի սահմանափակվում։

Ավելացնենք նաև, որ քաղաքի պեղումների ընթացքում գտնվել են գրչության արվեստի հետ կապված նյութեր՝ գրչահատ, թանաքաման, գրակալներ և այլն։

Անի քաղաքի բազմակի ավերումների և կողոպուտների ժամանակ ձեռագրական հսկայական, ցավալի ու անվերադարձ կորուստներ են եղել։ Գրքերը միշտ բաժանել են իրենց ծնող ժողովրդի ճակատագիրը։ Մոնղոլների կողմից Անիի գրավմանը (1236 թվական) վերաբերող մի հիշատակարան վկայում է. «...պաշարեցին մայրաքաղաք Անին և բոլորին սրի քաշելով սրբություններն անարգեցին և գրքերը գերի տարան...»։

Սակայն չնայած արհավիրքներին՝ անգամ Անիի ամայացմանն ու կործանմանը, քաղաքի ձեռագրական մշակույթի վերաբերյալ պահպանված նյութերն ու փոքրաթիվ նմուշներն իսկ վկայում են գրչության ու մանրանկարչության մի մեծ վերելքի մասին, որը ծաղկել էր շքեղաշեն Անի քաղաքի կենսահորդ մթնոլորտում և համահնչյուն ու ներդաշնակ էր նրա ստեղծագործ, աշխարհաշեն ոգուն։

ԿԱՐԵՆ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ




Այն, որ երաժշտության նկատմամբ կենդանիներն ու բույսերը անտարբեր չեն, այսօր արդեն զարմանք չի պատճառում: Ավստրիայում կովերը, Շտրաուսի վալսի ազդեցության տակ, կաթնատվությունը ավելացրել են միանգամից 35 տոկոսով, իսկ Հնդկաստանի բուսաբանության ինստիտուտի դոկտոր Ս. Սինգը վկայում է, որ երաժշտության շընորհիվ կարողացել է բրնձի և ծխախոտի բերքատվությունը բարձրացնել 50 տոկոսով:

Սեր, բարություն. մի՞թե սրանք չեն լավագույն սպեղանիները, որոնք երբևէ հայտնագործվել են աշխարհում: Երաժըշտությունը բուժական միջոց է: Մենք չենք խոսի այն մասին, որ հնում մարդիկ, ինչպես և ժամանակակից շամանները, մոգերը, օգտագործել և օգտագործում են երաժշտության ռիթմը՝ մարդուն այս կամ այն հոգեվիճակին հասցնելու, ուժասպառ անելու կամ, ասենք, ծայրահեղ ապշահարության մեջ գցելու համար: Դիմենք բժշկության և երաժշտության փոխադարձ կապին: Դեռևս 1811 թվականին ոմն Պետրո Լիխենտալ հրապարակեց «Մարդու մարմնի վրա երաժշտության ներգործության մասին» տրակտատը: Այդ դիտարկումները ակտիվորեն կատարվում էին նաև մեր դարասկզբին, սակայն դեղամիջոցների հայտնաբերումից հետո այդ աշխատանքները գործնականորեն դադարեցվեցին: Սակայն այսօր, դատելով մամուլից, երաժըշտությունը՝ իբրև բուժամիջոց, կարծես վերածնունդ է ապրում: Նախորդ դարասկզբին, Իոհան Մալցելն աշխատում էր կատարելագործված մետրոնոմ ըստեղծել, որպես ելման կետ, նորմալ մարդու սրտազարկերին համապատասխան, ընդունել մեկ րոպեում 60 հարված հաճախականությունը (հիմա նորմալ է համարվում, իհարկե, 80 հարվածը մեկ րոպեում): Կարևոր է նշել այսպիսի մի

հանգամանք ևս. կյանքը, սկսած ատոմներից ու կենդանի բջիջներից, յուրատեսակ ռիթմ է, թրթիռ, ինչպես և՝ երաժշտությունը:
Մաքս Պլանկի ինստիտուտում գիտափորձ կատարեցին նաև ձկների վրա, նրանց ենթարկելով ձայնային ալիքների ներգործության՝ որոշակի և հավասարաչափ ընդմիջումներով: Արդյունքը եղավ այն, որ սկզբում դանդաղեց նրանց շնչառությունը, իսկ հետո, աստիճանաբար, հեղձուկից սատկեցին: Այն, որ երաժշտության ռիթմն ու հնչերանգը կարող են դառնալ հիվանդության և նույնիսկ մահվան պատճառ, ապացուցվում է, դժբախտաբար, ոչ միայն ձկների օրինակով: Արձանագրված է հետևյալ դեպքը. երբ Դետրոյթում 17-ամյա մի աղջկա դիսկոտեկից ուղիղ հիվանդանոց են տեղափոխել ստամոքսի առջևի պատի ջղաձգմամբ. բժիշկները չեն կասկածել, որ պատճառը եղել է ուժեղացված բարձրախոսներից հնչող մեծ ձայնածավալ ունեցող երաժշտությունը: Այդպիսի դեպքում հնչյունները մարդկանց մոտ ակնթարթորեն անհանգիստ վիճակ, տագնապ են հարուցում, հասցնում ընդհուպ ստրեսային ճգնաժամի: Պատահական չէ, որ արևմտյան կինոգործիչները «ֆիլմսարսափ» ստեղծելիս կարևոր են համարում այդօրինակ երաժշտության կիրառումը: Ակնհայտ է, որ «հակազդող» երաժշտությունը կարող է «հակադիր» հետևանքներ առաջացնել և դրանով իսկ իր որակի մեջ դառնալ դեղամիջոց:
Բժիշկներն երաժշտության դրական ներգործությունը արձանագրում են մասնավորապես նյութափոխանակության, նյարդային գրգռվածության թուլացման, մկանային էներգիայի ուժեղացման, շնչառական օրգանների նորմալացման, արյան ճնշման կարգավորման, ցավերի մեղմացման և այլ երևույթների վրա: Եվ որովհետև մինչև այժմ հիմնավորապես ուսումնասիրված չէ երաժշտության ներգործության ողջ մեխանիզմը, այդ իսկ պատճառով շատացել է այդ մասնագիտությամբ «ոգևորվողների» թիվը:
Ինչեր ասես, որ չեն առաջարկում բուժել. անքնությունը, կակազելը, հոգեկան խանգարումները, շրջապատի նկատմամբ դժվար դաստիարակվող երեխայի կամ դեռահասի հետաքրքրության բացակայությունը: Ոմանց կարծիքով, այն դպրոցականները, որ պարապում են նաև երաժշտությամբ, առավել բարձր առաջադիմություն են ցուցաբերում: Վերջապես որոշ երկրներում երաժշտական անզգայացումը դարձել է շատ սովորական, որը կա՛մ լրացնում, կա՛մ էլ հաճախ փոխարինում է սովորական անզգայացումներին՝ ատամ հեռացնելու, ծննդաբերելու, տարբեր տեսակի վիրաբուժական միջամտությունների ժամանակ:
Ինչպես հաճախ պատահում է Արևմուտքում, զրույցները, սեմինարները, հրապարակումները այս բուժամիջոցի մասին բազմաթիվ գործարար մարդկանց մղում են «արձագանքել» ժամանակի կանչին: Եվ ահա, երևան են եկել հատուկ ձայնագրություններ՝ գլխացավից, ստամոքսացավից և այլ հիվանդություններից բուժվելու համար: Սակայն դրանով լրջորեն զբաղվող բժիշկները և երաժշտագետները հայտնում են, որ երաժշտաթերապիան հրաշք չէ և ոչ էլ բալասան, այն ի վիճակի չէ փոխարինելու դեղերին: Այդ կարծիքին է, օրինակ, հայտնի ավստրիացի դիրիժոր, բժշկի որդի, Հերբերտ Ֆոն Կարայանը, որ երաժշտաթերապիայի կենտրոններից մեկի ղեկավարն է: «Այո՛ բժիշկներին և ոչ՝ հեքիմներին»,— այս է նրանց նշանաբանը: Մի կարևոր հանգամանք ևս. ինչպես ամեն տեսակ բուժում, այնպես էլ երաժշտաթերապիան, բացարձակապես զուտ անհատական մոտեցում է պահանջում՝ ըստ յուրաքանչյուրի հոգեկան առանձնահատկությունների: Եթե «հին դպրոցը» ընդունում էր, որ առանձին երաժշտական գործիքներ, օրինակ, ֆլեյտան՝ տագնապ, ջութակը՝ գլխացավ, քսիլոֆոնը՝ ագրեսիվություն, դաշնամուրը՝ անինքնավստահության զգացումներ մեղմելու, բուժելու հատկությամբ են օժտված, ապա «նոր դպրոցը» պնդում է, որ երաժշտությունը հարկավոր է ընտրել, այսինքն՝ անհատական մոտեցում ցուցաբերել: Բայց և այնպես, անհանգիստ լրագրողները գիտականներից պահանջում են բուժամիջոցների որոշակի ցուցակ, թեկուզ՝ պայմանական:
Մասնագետներն իրականում որոշակի ոչինչ չեն ասում, բայց և հիշեցնում են, որ Բեթհովենի սիմֆոնիաները, այնուամենայնիվ, առողջապահության մինիստրությունների հսկողության տակ չեն գրվել և, ամենակարևորը, որ ռոք երաժշտությունը վնասակար է ստամոքսի բորբոքում ունեցող հիվանդներին:

— Ի՞նչ է պատահել, երեսիդ գույն չկա:

— Մի խռնեցրու, երեկվանից ուշքի չեմ գալիս:

— Դժբախտ դե՞պք է պատահել:

— Դու գիտես իմ կատաղի բնավորությունը, չէ՞, գիտես...

— Ը... ասել ես:

— Գիտես, չէ՞, որ պոռթկացի՝ ամեն ինչ տակն ու վրա եմ անում:

— Ը... այո, ասել ես:

— Երեկ երեկոյան, ավտոբուսի կանգառում, մեկը մոտեցավ ինձ, լուցկի խնդրեց: Ասացի՝ չեմ ծխում: Ասացի նաև, որ չեմ ծխել և երբեք չեմ ծխելու, որովհետև ծխելը ծանր հիվանդություններ է առաջացնում: Հետո ավելացրի, որ ես զարմանում եմ, թե՝ ծխողները որքան մակերեսային, անլուրջ և հասարակության համար որքան վտանգավոր մարդիկ են, որ չեն մտածում ո՛չ իրենց, ո՛չ հարազատների, ո՛չ երեխաների ու ո՛չ էլ շրջապատի մասին, որ այդ զարհուրելի ու անմարդկային սովորությունը իմ մեջ բորբոքում է... Խոսքս դեռ չէի ավարտել, երբ անծանոթը բարկությամբ ասաց՝ ճառ մի կարդա, լուցկի չունես՝ ասա չունեմ, ու շուռ եկավ, գնաց:

— Լավ է, որ գնացել է: Ես կարծեցի՝ վիճել եք:

— Ո՞նց թե՝ լավ է, որ գնաց... Նա ինձ արհամարհի, ու ես թողնեմ հանգիստ հեռանա՞: Դու չգիտե՞ս իմ կատաղի բնավորությունը: Ասացի՝ ընկեր, կանգնեք: Կանգնեց: Ե՞ս եմ ճառ կարդում,— ասացի,— դուք այդ ի՞նձ ասացիք: Այո,— ասաց,— ձեզ: Լսեք,— ասացի,— դուք սարո՞ւմ եք ապրում, թերթ չե՞ք կարդում, չգիտե՞ք, որ ծխելն առաջացնում է թոքերի, ստամոքսի, աղիքների, լյարդի, երիկամների, նյարդերի, ուղեղի, մաշկի, տեսողության, լսողության, հոտառության... Բավական է, հասկացա,— ընդհատեց ինձ անծանոթը ու շրջվեց, որ գնա: Ես կտրեցի նրա ճանապարհը: Ընկեր,— ասացի,— դուք հենց ծխող եք, որ կաք, որովհետև լսելու կուլտուրա չունեք: Երբ մեկը խոսում է... Անծանոթն ինձ մի կողմ հրեց և բարկությամբ ասաց՝ թողեք գնամ... Հրեց, պատկերացնո՞ւմ ես: Դու լավ գիտես իմ կատաղի բնավորությունը, ես այդպիսի բաներ չեմ ներում: Լսեք, ընկեր,— ասացի ու կանգնեցի նրա առաջ,— ինչո՞ւ եք ինձ հրում: Նա կանգնեց, նայեց ինձ ու ոչինչ չասաց: Թեքվեց աջ, որ գնա, ես առաջը կտրեցի. թեքվեց ձախ՝ ես առաջը կտրեցի: Երկար, լուռ նայեց ինձ: Ինչո՞ւ եք լռում,— դեմքս մոտեցնելով նրա դեմքին գոռացի ես,— լեզու չունե՞ք: Նա շրթունքները պինդ սեղմեց, որ չխոսի, բայց աչքերը կատաղորեն պտտվում էին ու քիչ էր մնում իրենց բներից դուրս թռչեին: Աջ ձեռքը դողալով բարձրանում էր ու իջնում, հավանաբար զսպում էր



իրեն, որ չխփի ինձ: Այդ ի՞նչ եք ուզում անել,— ասացի,— չլինի՞ ուզում եք խփել ինձ, հը՞, ուզո՞ւմ եք... Նա սկսեց դանդաղ ետ-ետ գնալ, բայց ես կիպ-կըպած գնում եմ ու հայացքս չեմ հեռացնում նրա աչքերից: Ինչո՞ւ եք ձեր աչքերը ոլորում վրաս,— հարցնում եմ,— ներվայի՞ն եք, հա՞... Նա տնքաց, կատաղի փնչացրեց ու թափով ապտակեց ինձ: Օրը ցերեկով, փողոցում, ինձ ապտակում են... պատկերացնո՞ւմ ես իմ

վիճակը: Դու գիտես իմ կատաղի բնավորությունը, ես որ պոռթկացի՝ ամեն ինչ տակնուվրա եմ անում: Ո՞ւր եք գընում, ընկեր,— հիստերիկ ճչացի ես,— մարդկանց ներկայությամբ ինձ ապտակեցիք և ուզում եք հանգիստ խղճով գընալ ձեր տուն և հեռուստացո՞ւյց նայել... Պինդ բռնեցի նրա օձիքը: Դողում է, բայց ձայն չի հանում: Փորձեց ձեռքս հեռացնել օձիքից՝ չկարողացավ: Հուսահատ նայեց շուրջը, հետո՝ ինձ, ու հանկարծ դեմքի մկանները սկսեցին թրթռալ,




աղավաղված ժպտաց, անհասկանալի բառեր գոռաց և բռունցքով հարվածեց դեմքիս, ապա իրեն կորցրած՝ սկսեց ոտքերով խփել: Խփում էր ծնկներիս, փորիս... Դու լավ գիտես, որ ես չեմ սիրում, երբ փորիս են խփում, դու լավ գիտես իմ կատաղի բնավորությունը...

Անծանոթը հուսահատ նայեց իր շուրջը և գոռաց՝ ժողովուրդ, սա իմ կյանքը ուտում է, դուք խիղճ չունե՞ք... և իրեն կորցրած՝ հարձակվեց: Հավաքվածները կես ժամ չէին կարողանում ինձ նրա ձեռքից ազատել: Անծանոթը լաց էր լինում, գոռում էր, որ ինքը միայն լուցկի է ուզել... Երբ նրան մի կողմ քաշեցին, ես իսկույն ոտքի թռա և, որպեսզի նա չկարծի, թե իրենից նեղացած եմ, ժըպտալով մոտեցա ու ասացի՝ ընկեր, նախօրոք եմ ուզում զգուշացնել, որ հետո թյուրիմացություն չլինի, ես կատաղի բընավորություն ունեմ և երբ կատաղում եմ՝ ամեն ինչ տակնուվրա եմ անում: Անծանոթը մի քանի վայրկյան լուռ նայեց ինձ ու զզվանքով երեսը շուռ տվեց: Հենց որ նա երեսը շուռ տվեց՝ ես արդեն չդիմացա: Դու գիտես, որ ես ֆիզիկական ցավին կարող եմ դիմանալ, սովին ու ծարավին կարող եմ դիմանալ, բայց երբ զզվանքով ինձնից երես են շուռ տալիս՝ անկարող եմ դիմանալ: Երեխա ժամանակից չեմ սիրել այդ բանը...

— Ծեծեցի՞ր նրան:

— Ոչ, բարեկամս, դրա կարիքը չեղավ. ես տեսա, որ նա ինձ չի հասկանում, և փախա:

— Փախա՞ր: Այդքան ծեծ ուտելուց հետո փախա՞ր...

— Նա չէր ուզում հասկանալ, որ ծըխելը վնասակար զբաղմունք է և...

— Լսիր, կարծեմ դու էլ ես ծխում, ուրեմն քեզ էլ կարող եմ ասել, որ ծխելու պատճառով ստամոքսի, նյարդերի, սըրտի....

— Ներիր, ես պետք է գնամ:

— Սպասիր: Դու երևի լավ չլսեցիր, ես ասում եմ, որ ծխելը...

— Չպատմես, ես չեմ դիմանա... թող գնամ...

— Կմտածեմ... ես ծխելը կթողնեմ...

— Դու ինձնից ազատվելու համա՞ր ես ասում: Լավ չես անում: Ես մտածում եմ ոչ միայն քո և քո շրջապատի, այլև...

— Թող պիջակս... Լսիր, դու ինձ ծեծո՞ւմ ես... Դու չգիտե՞ս, որ ես կատաղի բնավորություն ունեմ... Դու խփում ես իմ այն տեղերին, որտեղ խփում էր երեկվա անծանոթը... Դու չգիտե՞ս, որ ես չեմ սիրում, երբ խփում են իմ հենց այդ տեղերին... Լսիր, մարդիկ նայում են...

— Թող նայեն... Դու իմ կյանքը կերար...

— Եթե դու չես ուզում, որ ես օգնեմ քեզ կործանումից խուսափել...

— Կանգնիր, ո՞ւր ես փախչում կատաղի բնավորությամբ մարդ, ի՞նչ ես ուզում ինձնից, չէ՞ որ դու էլ ես ծխում...




1. Ժողովրդական ստեղծագործող և կատարող վարպետ: 2. Փողային երաժշտական գործիք: 3. Հայկական ժողովրդական երգ: 4. Հայկական պար: 5. Բեմական արվեստի տարատեսակ: 6. Ալ. Սպենդիարյանի օպերաներից: 7. Հարվածային երաժշտական գործիք: 8. Հայկական երաժշտական կինոնկար: 9. Լարային, աղեղնավոր երաժշտական գործիք: 10. Կոմիտասի ստեղծագործություններից: 11. Հայ գուսան: 12. Արամ Խաչատրյանի բալետներից: 13. Խոջաէյնարյանի օպերաներից: 14. Ժողովրդական երաժշտական գործիք:

ԳԱՂՏՆԱԳԻՐ— Հարցերին ճիշտ պատասխանելուց հետո հարկավոր է լրացնել շեղանկյունները, որոնցում նշված նոտաները ցույց են տալիս, թե համապատասխան ուղղահայացի որ տառն է անհրաժեշտ: Գաղտնագիրը ճիշտ լուծելու դեպքում կկարդաք հայ կոմպոզիտորներից մեկի անուն-ազգանունը:

Կազմեց ՎԱՆԻԿ ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ

---

## ԺՊԻՏՆԵՐ

● ԴԱՏԱՎՈՐ— (Խիստ): Հաջորդը, ով միջամտի դատին, անմիջապես տուն կգնա:

ՄԵՂԱԴՐՅԱԼ— Ուռռա՜...

● Երբ փոքրիկ տղան դպրոցից տուն եկավ, մայրը հարցրեց, թե խելո՞ք է իրեն պահել դասերի ժամանակ: Նա պատասխանեց. «Իհարկե խելոք եմ պահել: Ի՞նչ չարություն կարող ես անել, երբ անկյուն ես կանգնած»:

● Ֆիզիկայի դասին, ուսուցիչը հարցրեց.

— Ո՞վ կարող է որևէ բան ասել տաքության մասին:

Մի փոքրիկ տղա ձեռք բարձրացրեց:

— Տաքությունից, պարոն, առարկաները ընդարձակվում են, իսկ ցրտից՝ սեղմըվում:

— Ապրես, մի օրինակ ասա:

— Ամռանը, որովհետև շոգ է, օրերը երկար են, իսկ ձմռանը՝ կարճ են, որովհետև ցուրտ է:

● Ուսուցիչը ասում է մի թույլ աշակերտի.

— Երբ ես քո տարիքին էի, կարողանում էի պատասխանել ուսուցչի յուրաքանչյուր հարցին:

— Այո, բայց դուք մոռանում եք, որ դուք և ես տարբեր ուսուցիչներ ենք ունեցել:

● ԱՂՔԱՏ ՆԿԱՐԻՉ— Թույլ տվեք հայտարարել. մի քանի տարուց հետո մարդիկ կմտնեն այստեղ և կասեն. «Այստեղ աշխատել է նկարիչ Ջոնսը»:

ՏԱՆՏԻՐՈՒՀԻ—Եթե մինչև երեկո տան վարձը չտաք, մարդիկ դա կասեն հենց վաղը:

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

● 1273 թվականին Անգլիայի պառլամենտը օրենք է ընդունել Լոնդոնում քարածուխ չվառելու վերաբերյալ: 1306 թվականին մի մարդ մահապատժի է ենթարկվել այդ օրենքը խախտելու համար:

● 1952 թ. Լոնդոնում թունավոր մառախուղի (սմոգի) հետևանքով չորս օրում մահացել է 4000 հոգի, ավելի շատ մարդ, քան 1866 թ. խոլերայի համաճարակից:

● 1950—51 թթ. ԱՄՆ-ի վնասները օդի աղտոտումից կազմել են 1500 միլիոն դոլլար:

● 1940 թվականին օդի աղտոտումից Անգլիայի շենքերի ստացած վնասը կազմել է 2,5 միլիոն ֆունտ ստերլինգ:

● Օդի աղտոտման դեմ պայքարը բարոյական կատեգորիա է:




● Ինչքան վերցնում ես, այնքան մեծանում է:

(Փոսը)

● Ի՞նչն է. ոչ տան մեջ է, ոչ տնից դուրս, բայց տունը առանց նրա չի լինի:

(Դուռը)

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 3 • 88



Հանձնված է արտադրության 05.01.88 թ.: Ստորագրված է տպագրության 03.15.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100¹/₁₆: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 65432: Պատվեր՝ 1: Գինը՝ 15 կոպ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 05.01.88 г. Подписано к печати 03.15.88 г. Формат 70×100¹/₁₆. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 65432. Заказ 1. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении. пр. Орджоникидзе, 2.

# Զարթիր որդյակ

Խոսք՝ Պ. Վ. ՆԱԹԱՆՅԱՆԻ
Երաժշտությունը՝ Մ. ԵԿՄԱԼՅԱՆԻ
(գինվորի մոր երգը)



Զարթի՛ր որդյակ, հուշ բեր, վեր կաց,
Պատերազմի փողն հնչեց,
Զարթիր, գոչեց ձայնն հայրենյաց,
Կենաց-մահու ժամն հնչեց:

Ելիր՝ կապեմ սուրը մեջքիդ,
Ասպար կախեմ քո ուսեդ,
Եվ սուրբ դրոշակն հայրենիքիդ
Թող ծածանե աջ թևեդ:

Միթե դու չես հիշեր՝ երբ որ
Գրիչ ու թուղթ տվի քեզ,
Փոխան դոցա, ասի, մի օր
Ուրիշ բաներ կուտամ քեզ:

Ահա՛, գրչի փոխան քեզ սուր,
Փոխան թղթի՝ կռվի դաշտ,
Գնա փրկել մեր հայրենիք՝
Քո մայր ժպտի գոհ և հաշտ:

Andantino

S.
A.

T.
B.

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):
Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.: